

# Ավարտեցինք ՈՒՍՄԱՆ ՏԱՐԻՆ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ



Ավարտեցինք ուսման տարին
Ու փոխվեցինք նոր դասարան,
Մեր խոստումը հայրենիքին
Կատարեցինք քաջի նման:

Իսկ շոգ ամռան ջինջ օրերին
Մենք կլինենք ճամբարներում,
Կողջունենք վառ արևին,
Կլողանանք պաղ ջրերում:

Ջոկատներով կանցնենք մեկտեղ
Սաղարթախիտ անտառներով,
Կածաններով կանաչ ու նեղ
Կճամփորդենք երգ ու տաղով:



Կբարձրանանք սարերը մեր,
Ուր ամպերն են գալիս կիտվում,
Կմագլցենք ժայռերն ի վեր,
Ուր արծիվն իր բույնն է դնում:

Իսկ երբ իջնի խաղաղ գիշեր,
Զեփյուռը մեղմ փչի ազատ,
Խաղաղության խարույկը մեր
Մենք կվառենք աստղերի տակ:

Ու զիլ կերգենք.—Հարազա՜տ ես
Դու հայրենիք սովետական.
Ժպտում է մեզ, սիրած մոր պես,
Գեղատեսիլ մեր ապագան:



Երբ ճամբարից վերադառնանք
Շատ նվերներ մենք կբերենք,
Այդ գյուտերը բազմատեսակ
Մեր դպրոցին կնվիրենք:






*Լենինի–Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 6
ՀՈՒՆԻՍ
1951 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ



1951 թվականի մայիսմեկյան տոնակատարության ժամանակ Մոսկվայի 132-րդ դպրոցի առաջին դասարանի աշակերտուհի Իրա Մելնիկովան մայրաքաղաքի պիոներների անունից ծաղկեփունջ հանձնեց մանուկների մեծ բարեկամ, խաղաղության առաջնորդ ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԻՆ

(ՏԱՍՍ-ի ֆոտոխրոնիկա)

# ԵՐԵԽԱՆԵՐԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Հունիսի մեկը երեխաների պաշտպանության միջազգային օրն է: Այդ օրը նշում են ամբողջ աշխարհի խաղաղասեր մարդիկ:

Տանր է երեխաների դրությունը կապիտալիստական երկրներում: Նրանք սովի և աղքատության են մատնված, որովհետև կապիտալիստները միայն մտահոգված են համաշխարհային նոր պատերազմ պատրաստելով: Նրանք Կորեայում և այլ երկրներում կոտորում են հազարավոր անմեղ մանուկների և նրանց ծնողներին:

Այլ է երեխաների դրությունը Սովետական Միության մեջ և ժողովրդական դեմոկրատիայի երկրներում: Մեր երեխաներն ունեն դպրոցներ, մանկապարտեզներ և ուրախ ու երջանիկ կյանքի շատ ուրիշ օջախներ: Նրանք շրջապատված են բոլշևիկների պարտիայի և սովետական կառավարության ամենօրյա հոգատարությամբ: Սովետական երեխաներն իրենց ուրախ ու երջանիկ կյանքի համար պարտական են Մեծ առաջնորդ, մանուկների սիրելի բարեկամ ընկեր ՍՏԱԼԻՆԻՆ:

# ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ԱՄԱՌԱՅԻՆ ՀԱՆԳՍՏԻ ՄԱՍԻՆ

Երեխանե՛ր.

Մայիսի 9-ին կայացավ ՀԼԿԵՄ Կենտկոմի 4-րդ պլենումը: Պլենումը քննարկեց պիոներների և դպրոցականների ամառային հանգիստը կազմակերպված անցկացնելու խնդիրները:

Ելնելով ՀամԼԿԵՄ Կենտկոմի 6-րդ պլենումի որոշումներից, ՀԼԿԵՄ Կենտկոմի 4-րդ պլենումը նշեց, որ այս տարի թե՛ ճամբար գնացող և թե քաղաքներում ու գյուղերում մնացող երեխաների շրջանում կուլտուրական հանգիստը, դաստիարակչական, ֆիզկուլտուրայի և սպորտի աշխատանքը պետք է կազմակերպել այնպես, որ պիոներներն ու դպրոցականները խորացնեն ուսումնական տարվա ընթացքում ձեռք բերած գիտելիքները:

Այս տարի գյուղերում կազմակերպվելու են հավաքական պիոներական դրուժինաներ: Նրանց աշխատանքներում կարևոր տեղ պետք է գրավեն ճանապարհորդություններն ու արշավները, պատանի բնասերների աշխատանքը:

Պլենումը անհրաժեշտ համարեց դպրոցներին, ակումբներին, կուլտուրայի ու հանգստի պարկերին և խոշոր բնակելի շենքերին կից կազմակերպել քաղաքային պիոներական ճամբարներ: Կոմերիտական ռայոնական կոմիտեները, շեֆ հիմնարկներն ու ձեռնարկները ծնողների անմիջական աջակցությամբ պետք է ստեղծեն բոլոր պայմանները այդ ճամբարների լավ կազմակերպման համար:

Պլենումը քաղաքային և ռայոնական կոմերիտական կոմիտեներին պարտավորեցրել է օգնել դպրոցական սպորտային հրապարակները, ստադիոնները, ջրային կայանները, կուլտուրայի և հանգստի պարկերի խաղադաշտերը երեխաներին տրամադրելու գործում:

Պլենումը նպատակահարմար է գտել քաղաքային ճամբարներում մանկավարժների, պրոֆմիությունների, հիմնարկների և դպրոցական կոմերիտական կազմակերպությունների ներկայացուցիչների խորհուրդներ ստեղծել: Ճամբարային խորհուրդը պետք է երեխաների համար մատչելի զրույցներ կազմակերպի՝ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի կյանքի ու գործունեության, միջազգային դրության, սոցիալիստական շինարարության հաջողությունների, բնության վերափոխման Ստալինյան պլանի, կոմունիզմի մեծ կառույցումների մասին:

Կոմերիտական կազմակերպությունները, ժողովրդական կրթության օրգանները և պրոֆմիությունները լավ պետք է նախապատրաստեն ճամբարի վայրը, նրա կահավորումը, և նոր միայն երեխաներին ուղարկեն այնտեղ:

Պլենումը հատուկ ուշադրություն է դարձրել, որ ճամբարներում ամբողջ աշխատանքը պլանով տարվի և երեխաների հանգիստը կազմակերպվի խելացի կերպով: Ամեն մի ճամբարում պետք է ստեղծվեն երգի, պարի, դրամատիկական, կերպարվեստի և ինքնագործունեության այլ խմբակներ:

Հաջողությամբ ավարտելով ուսումնական տարին, դուք պիոներական ամառը կանցկացնեք է՛լ ավելի ուրախ, հետաքրքրական և բովանդակալից:

Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ





# Առաջին ԾԱՂԻԿՆԵՐԸ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ
լուսանկ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆԻ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Գարունը Շիրակի դաշտը թուխ է դարձրել... Ի՞նչ արևոտ, ջերմ օրեր են սկսվել այստեղ։ Խոխոջում են առվակները, հեռվից լսվում է Ախուրյան գետի աղմուկը...

Ահա, մենք պատանի բնասերների գեղեցիկ, երկու հեկտարանոց այգում ենք։ Ի՞նչ փափուկ է գետինը, այս փխրուն, խոնավությամբ ներծծված հողը։ Նայեցեք այս բնասեր պիոներներին՝ Հարություն Թնգրյանին, Համլիկ Սահակյանին, Շողիկ Ստեփանյանին, Ալվարդ Գրիգորյանին... Նրանք այնպե՜ս ուրախ են շրջում իրենց աճեցրած այգում։

— Իմ խնամած ագնվամորու թփերը ժպտում են արևին, նայեցե՛ք,— բարձր ու խանդավառ գոչում է պիոներ Լևոն Զաքարյանը և բոլորը նրա կողմն են դառնում։

— Ճիշտ որ, կանաչ գլխիկը դուրս է եկել և ձգվել է դեպի վեր,— լրացնում են հուզված ընկերները։

— Նայեցեք տերևներին,— շարունակում է Զաքարյանը,— ի՜նչ լայն են, ու ինչպես էլ կանաչ են մնացել։

Պատանի բնասերների հետ պարապող Լեռնուհի Ավոյանը բարձրացնում է ձեռքը և գոչում։

— Ուշադրությո՛ւն, ինձ մոտ եկեք։

Խմբված նայում են ագնվամորու թփին։ Լեռնուհին ցույց է տալիս անցյալ տարի այդ թփից քաղված և սպիրտի մեջ պահված, խոշոր, կարմրադեղնավուն ագնվամորին։

— Լևո՛ն,— ասում է նա,— անցյալ տարի յոթանասուն կիլոգրամ ագնվամորի հավաքեցինք, այս տարի ավելի շատ պետք է հավաքենք, լավ իմացեք։

— Այնպե՜ս աճեցնենք, այնպե՜ս խնամենք, որ երկու հարյուր յոթանասուն կիլոգրամի հասցնենք,— պատասխանեց Լևոնը։



Պատանի բնասերները հողը նախապատրաստում են ցանքի համար։



Միշա Զումարյանը և Լևոն Զաքարյանն իրենց աճեցրած և այս տարի առաջին անգամ ծաղկած բալենու մոտ:

*— Մեր երկրում ոչ մի խոստում անկատար չի մնում,— ասաց Լեռնուհին։*

*Քիչ հետո բոլոր պատանի բնասերներն իրենց մարգերի շուրջը սարքված թմբերի վրա էին, կռացած, ուշադիր դիտում էին բույսերն ու թփերը, արմատները։ Նրանց հետ էր նաև պիոներ Վալտեր Պետրոսյանը, որը անցյալ տարի 50 քառակուսի մետր տարածությունից ստացել է 175 կիլոգրամ ձմերուկ, յուրաքանչյուրը 3—4 կիլոգրամ քաշով, կամ հեկտարից 35 տոննա։ Պետրոսյանը Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի հավանական թեկնածու է։ Նրանց հետ էին նաև Լենինականի բարձրավանդակում առաջին անգամ պամիդոր աճեցրած բազմաթիվ պիոներներ, ինչպես և շատ բնասերներ ու այցելուներ։*

*Շողշողում էին նրանց հայացքները, բոլորի աչքերում էլ երջանկության ժպիտ կար, պատանեկական երազանքը համակել էր բոլորին։ Նրանք երազում էին ծովի մակերևույթից 1530 մետր բարձրության վրա լիքը կողովներով քաղցր ու հյութեղ ազնվամորու բերք հավաքելու մասին։*



*Պատանի բնասերների հողամասի մի զգալի մասը պատած է ծառերով։ Այնտեղ մենք խնձորենու 23, բալենու 25 և տանձենու 19 ծառ հաշվեցինք։*

*Պատանի բնասերների կայանի պետ, երիտասարդ ագրոտեխնիկ Մնացական Մուրադյանն ասում է.*

*— Յուրաքանչյուր երկու-երեք ծառը մի սորտ է. դեռ ինչքա՜ն նոր սորտեր ենք աճեցնելու։ Այս տարի մեր պիոներների մշակած տնկարանից հինգհարյուր ծառ էլ նվիրելու ենք հարևան կոլխոզներին... Կատարված ստուգումները ցույց տվեցին, որ բոլոր ծառերն էլ հաջողությամբ են ձմեռել, չեն ցրտահարվել։*

*Ահա, ամեն մի բնասեր մոտեցել է իր տնկած ու աճեցրած ծառին, ու ինչպես մայրն օտարությունից եկած որդուն, դիտում է նրանց ճյուղերը, շոշափում, գուրգուրում...*

*— Բայց ինչպե՞ս է, որ նրանք բոլորն էլ գիտեն իրենց ծառերը,—հարցնում է մեկը։*

*— Յուրաքանչյուր ծառ համարակալված է։ Ծառերի բներին տախտակներ են փակցրված։ Նրանց վրա գրված է, թե ում են պատկանում։*

*Այս խնձորենին փոքրիկ է, դեռևս 3 ճյուղանի։ Նայում ենք տախտակին։ Նրա վրա կարդացվում է «Ջեմմա Մարտիրոսյան, 8-րդ դպրոց, 6-րդ դասարան»։*

*— Ո՞վ է Ջեմման, այս խնձորենին աճեցնողը,— հարցնում է մեկը։*

*Հարևան ծառի տակից երևում է գեղեցիկ հագնված մի աղջիկ և ասում է.*

*— Ես եմ։*

*Բոլորը նայում են Ջեմմային։ Իսկ Ջեմման ահա ձեռքն է առնում բրիչը և փորում իր աճեցրած ծառերի շուրջը...*

*— Փխրուն է հողը, ինչո՞ւ ես փորում, դեռ ժամանակը չէ,— ասում են նրան։*

*— Ի՞նչ եք ասում, ծառը գարնան առաջին օրերից պետք է ազատ շնչի։*

*Երջանկության զգացումից փայլում են նրա գեղեցիկ աչքերը։*

*— Ծաղիկնե՜ր, առաջին ծաղիկնե՜րը,— հեռվից գոչում է Թխաչյա Մարգո Հարությունյանը։ Բոլորը վազում են նրա կողմը։*

*Պարզվում է, որ ոչ մի ծաղիկ էլ չկա.*

բայց պատանի բնասերը 1949 թվականին իր տնկած բալենին ստուգել է և նոր, հազիվ երևացող բողբոջներից իմացել, որ այս տարի բալենին ծաղկելու է։ Պատանի բնասերների մի ուրիշ դաստիարակչուհի՝ Սոֆյա Ագուլյանը ստուգում է և ասում.

— Ճիշտ է, այս բալենին պետք է ծաղկի, սրանք ծաղկաբողբոջներ են։

Մարգոն պոկեց մի բողբոջ, նուրբ մատներով բացեց ու ասաց.

— Ա՛յ, սրանք՝ քորոցի փոքրիկ գլխիկների նման գնդիկները, հենց ապագա ծաղիկներն են։

Մի ուրիշ բողբոջ էլ պոկեց և ասաց.

— Իսկ այստեղ ծաղիկ չեք գտնի, նայեցե՛ք, այդ գնդիկներից չկան. այս սպիտակավուն-կանաչ միջուկը տերև է դառնալու։

Լեռնուհին և Սոֆյան գլխով նշան էին անում։

Բոլորն էլ ուրախ էին, երջանիկ։ Եվ այն միտքը, որ պատանի բնասերների այգում մի քանի շաբաթ հետո ծաղիկներ են տեսնելու, նրանց թևավորել էր։ Եվ նրանք թիթեռների նման աշխույժ թրվռում էին։

Նրանք՝ այդ պատանի էնտուզիաստները, Արագածի ու Մանթաշի ստորոտում՝ Շիրակի հարթավայրում, ուր առաջ միայն կաղամբ, գազար ու բողկ էր աճում, այժմ աճեցնում են՝ հյութեղ, խոշոր ազնվամորի, կարմիր պամիդոր, ձմերուկ, բալ, տանձ,



Կայանի պտղաբուծական խմբակի ղեկավար Լեռնուհի Ավոյանը պատմում է ծաղիկների փոշոտման մասին:

խնձոր։ Ամռանն ու աշնանը պատանի բնասերներին այցելում են լենինականցիները։ Պիոներները նրանց հյուրասիրում են իրենց աճեցրած միչուրինյան պտուղներով։

— Մեր նպատակն է,— ասում է պտղաբույծ Վարդուշ Եկմալյանը,— Շիրակի ամբողջ դաշտավայրում աճեցնել Արարատյան դաշտավայրի բանջարեղեններ, հատապտուղներ ու ծառապտուղներ։ Միչուրինը խաղողի որթը մի քանի հազար կիլոմետր դեպի հյուսիս տարավ. մենք էլ կարող ենք Արարատյան դաշտավայրից Շիրակ հասցնել։

Բոլորը խանդավառված նրան նայեցին։ Ապագա վառ հույսերի շողն էր փայլում նրանց աչքերում։



# ԻՄ ՓՈՐՁԵՐԸ

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

Բնագիտության դասատու ընկեր Ղազարյանը մեզ շատ անգամ է ասել, որ բնագիտությամբ զբաղվողը մեծ օգուտ է տալիս երկրին:

— Սիրեցեք և ձեր շրջապատը զարդարեցեք ծաղիկներով ու ծառերով,— ասել է նա:

Նա մեզ շատ բան է պատմել մեր երկրի անտառների, այգիների, պուրակների նշանակության մասին:

Ես բնագիտության առարկայից միշտ էլ 4 և 5 գնահատական եմ ստանում. սիրում եմ զբաղվել ծառեր ու ծաղիկներ խնամելով: Հայրս իրենց հիմնարկի բանջարանոցի աշխատող է. ամեն գարնան ես նրա հետ գնում եմ բանջարանոց և օգնում. ինքս էլ շատ բան եմ սովորում: Երբ ընկեր Ղազարյանը նկատեց իմ հետաքրքրությունը, խորհուրդ տվեց գնալ պատանի բնասերների կայան և մասնագետների ու գիտնականների ղեկավարությամբ բույսեր աճեցնել այնտեղ, ավելի խորը ուսումնասիրել բույսերի կյանքը:

1949 թվականի գարնանը ես և ընկերուհիներս գնացինք բնասերների կայան և ցանկություն հայտնեցինք ընդունվել պատանի միչուրինականների խմբակներում: Կայանի վարիչ ընկեր Մուրադյանը մեզ սիրով ընդունեց և ես ընտրեցի պտղաբուծական խմբակը:

Լենինականի կլիմայական պայմաններում տարբեր տեսակի մրգեր, պտուղներ աճեցնելը դժվար էր. բայց այդ դժվարությունը ինձ չվախեցրեց: Ես տնկեցի գիտական աշխատող ընկեր Կարանյանի ստացած միչուրինյան սորտից շաֆրան խնձորի մի ծառ: Անցավ մեկ ամիս և իմ տնկած ծառը տերևակալեց:

Ես շուտ-շուտ ջրում էի իմ ծառը, հողը՝ փխրեցնում: 1950 թվականի աշնանը կազմակերպվեց պատանի բնասերների աշխատանքների ցուցահանդես: Այնտեղ դրվեց և իմ նկարը, իմ խնամած ծառի հետ: Ցուցահանդեսի մասին գրվեց նաև «Բանվոր» թերթում:

Այդ բանն ինձ ավելի ոգևորեց և ես սկսեցի աշխատել նոր եռանդով: Մինչև այժմ էլ սիրով շարունակում եմ աշխատել բնասերների կայանում և խնամում իմ աճեցրած շաֆրան խնձորենին: Կանցնի մեկ, երկու տարի և իմ ծառը կծանրաբեռնվի մեծ, կարմիր ու անուշահամ խնձորներով, Լենինականի խնձորներով:

*ԱԼՎԱՐԴ ԳՐԻԳՈՐՅԱՆ*
(Լենինականի № 10 դրոժինայի 1-ին ջոկատի պիոներ)

# Ավելի բարձր բերք



*Նկ. Ան. Զորդաջյանի*

*Այն ժամանակ ես վեցերորդ դասարանում էի: Մի օր բնագիտության դասատու ընկեր Բարսեղյանը մեր բնագիտական խմբակը տարավ պատանի բնասերների նոր կազմակերպած կայանը: Մենք այնտեղ տեսանք առաջին բնասերներին, որոնք բանջարանոցային բույսեր էին ցանում, փոքրիկ ծառեր տնկում, հողը մշակում: Կայանից ոչ հեռու տարածվել էր Գիտությունների ակադեմիայի ծաղկած այգին:*

*Այնքա՜ն գեղեցիկ էր այգին, այնպես լավ էին աշխատում պատանի բնասերները, որ մենք էլ որոշեցինք մասնակցել կայանի աշխատանքներին: Ընկեր Բարսեղյանն այդ իմացավ և գովեց մեր մտադրությունը: Հենց այդ օրը մեր խմբակի ամեն մի անդամին մի հողամաս հատկացրին և ասացին, թե ինչ պետք է անենք:*

*Ես ընդունվեցի բանջարաբուծական խմբակ: Սկզբում ինձ համար դժվար էր հասկանալ ամեն մի բույսի պահանջները. բայց շուտով խմբակավար ընկեր Ավոյանի օգնու-*

*թյամբ ես վարժվեցի գործին։ 1949 թվին աճեցրի պամիդորի յուվել և բիզոն սորտերը։ Դա առաջին փորձն էր։ Դրա համար էլ հաճախ դիմում էի ղեկավարիս օգնությանը։ Նրա ցուցումով ես օժանդակ սնուցում կատարեցի և պարարտանյութերով հարստացրի հողը։ Իմ կիրառած պարարտանյութերն էին՝ կալիումական աղ, սուպերֆոսֆատ և ազոտական պարարտանյութեր։ Կատարելով այդ փորձերը և կանոնավոր հաճախելով կայանի պարապմունքներին, ես լավ ըմբռնեցի բընագիտության և քիմիայի մի շարք թեմաները։*

*Ամբողջ սեզոնի ընթացքում 3 անգամ փխրեցրել եմ հողը, 12 անգամ ջրել եմ, 3—4 անգամ մաքրել մոլախոտերը։ Հողի լավ մըշակումը և պամիդորի թփերի լավ խնամքը լավ էլ արդյունք տվին։ Կարմիր ու խոշոր պամիդորների առաջին բերքը հավաքեցի 1949 թվի հուլիսին։ Պարզվեց, որ 50 կիլոգրամ պամիդոր եմ հավաքել։ Իսկ անցյալ տարի հավաքեցի օգոստոսի 10-ին, բայց արդեն 130 կիլոգրամ։*

*Գործնական աշխատանքներից բացի մենք խմբակային պարապմունքների ժամանակ ծանոթացանք վարունգի, լոբու, կարտոֆիլի, կաղամբի և այլ կուլտուրաների կյանքին։ Ես այդտեղ հերբարիումներ էլ հավաքեցի։*

*Այս բոլորը մեզ օգնեց և մենք տարեվերջի քննությունները հանձնեցինք գերազանց գնահատականներով։*

*Այս տարի ես ավելի լավ բերք կստանամ։*

*ՀԱՍՄԻԿ ՍԱՀԱԿՅԱՆ*

(Լենինականի Մ. Նալբանդյանի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի)



## ԽԻՁԸԽՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

*Նկ. Ռ. ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ*



Բնագիտությունն ինձ սովորեցրեց, թե ինչպես կարելի է բույսեր աճեցնել ու գեղեցկացնել մեր հայրենի երկիրը։ Մինչև այդ էլ ես շատ էի հետաքրքրվում բույսերով, բայց երբ մենք ծանոթացանք մեծ գիտնական Ի. Վ. Միչուրինի կյանքին, ես որոշեցի ինքնուրույն կերպով ծառեր աճեցնել և դիտել նրանց կյանքը։ Մեր բնագիտության դասատուի խորհրդով ես կարդացի Միչուրինի, Տիմիրյազևի, Լիսենկոյի և Վիլյամսի գրքերը և իմացա սովետական երկրի համար նրանց կատարած մեծ գործերի մասին, լավ ըմբռնեցի բնագիտությունը։

Երբ դպրոցում պատանի միչուրինականների խմբակ կազմակերպվեց, ես էլ գրվեցի։ Ապա ընկերներիս հետ միասին ցանկություն հայտնեցի մասնակցել պատանի բնասերների կայանի խմբակներում։ Եվ 1949 թվականին ես կապվեցի կայանի հետ։ Այդ օրվանից ես կանոնավոր հաճախում եմ պտղաբուծական խմբակի պարապմունքներին։

Մեծ եղավ իմ ուրախությունը, երբ խմբակի ղեկավար՝ գիտական աշխատող Պետրոս Կարանյանն ինձ հատկացրեց մի հողամաս և ասաց, որ պտղատու ծառեր ու հատապտուղների թփեր տնկեմ։ Եվ ես տնկեցի հաղարջի 60 թուփ և բալենու կտրոններ։ Հե-

նանը հիբրիդների կորիզները ցանեցի և այժմ բարձր բերք եմ սպասում:

Այս տարի ես հաղարջի նոր թփեր եմ անեցնում, իսկ մյուս տարի կփորձեմ անեցնել մեր դպրոցի բակում: Ծառապատել եմ նաև մեր տան բակը. տնկել եմ 2 բալենի, 3 բարդի և 3 կեչի: Նույնը արել են նաև իմ ընկերները:

Ես և իմ ընկերները շարունակում ենք ուսումնասիրել սովետական խիզախ գիտնականների գործը և նրանց օրինակով բույսերի նորանոր տեսակներ աճեցնել: Ինձ ոգևորում է այն միտքը, որ վերադառնալով Սովետական հայրենիք, ես հնարավորություն ունեմ սովորելու մայրենի լեզվով և իմ ուժերը ներածին չափ օգտակար լինել հարազատ երկրին:

Ես երազում եմ այն օրը, երբ կգնամ Մոսկվա մասնակցելու Գյուղատնտեսական ցուցահանդեսին որպես գրտաշունչ մեր ֆաղաքում պտուղներ աճեցնող միչուրինական:



Լենինականի Հ. Հակոբյանի անվան դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ Գարեգին Մինասյանն իր աճեցրած ելակի մարգում:

տո իմ ղեկավարից սովորեցի և փոշոտման միջոցով նոր սորտեր ստացա: 1950 թ. աշ-

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԹՆԳՐՅԱՆ*

(Լենինականի № 19 դպրոցի 6 ա դասարանի աշակերտ)

# ՄՈՐ ԽՈՍՔԸ

*ՀՅՈՒ ԳԱՐԴԻՄԱՆ*

(Ամերիկացի գրող)

Մեր հողագունդը հարուստ է, առատ,
Այստեղ կա ածուխ, և՛ հաց, և՛ գործվածք,
Բայց քայլում են մերկ մանուկներն աղքատ
Իմ Յրեսանեյում, Տայվանում՝ գերված:
Մեր նահանգներում ցորենն է փտում,
Որպեսզի չիջնեն գները երբեք,
Հարուստներն անվերջ փող են կուտակում,
Իսկ աղքատները՝ մեռնում վշտաբեկ:
Կանզասի հարուստ պահեստներում կա
Ե՛վ յուղ, և՛ պանիր, ցորեն ու շաքար,
Բայց մայրը հազիվ, իր որդուն հյուծված,
Կերակրում է հացով չորացած:

Եվ Բրյուսելում, Փարիզում, Հռոմում,
Կռացած կյանքի ծանր բեռի տակ
Մայրը խորհում է՝ «Պատերազմն արդյոք
Չի՞ խլի տանի իր որդուն միակ...»:
Մայրե՛ր աշխարհի, ձեր ձայնը խռով
Լսում է մայրն էլ ամերիկացի.
Մենք ձեզ հետ մեկտեղ, ինչպես հուզված ծով,
Ելել ենք ահա արդար պայքարի,
Որ խաղաղությունը բեեր առած
Իջնի մեր կանաչ դաշտերի վրա,
Որ մանուկները զարնան երգ դարձած
Շտապեն դպրոց ուրախ, սրտաբաց:

Փոխադր. ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ




# ՆԱՄԱԿԸ

ՎԱՀԳԵՆ ՏԱԼՅԱՆ    Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

Ճեպընթացը սլանում էր, սլանում
Ու մեզ դեպի Գորի քաղաք էր տանում:
Երգում էինք մենք ցնծալի ձայներով,
Մեր խինդն ազատ սավառնում էր դաշտերով.
Ժայռոտ սարերն արձագանքով զրնգում,
Անտառները մեղմիկ պարով օրորվում.
Թռչունները օդը ճեղքում վերից վար,
Մանկան ճիչով թռչում երգին համաչափ.
Քուռն էլ ամռան վճիտ հորձանք էր տալիս,
Ասես դարձել մեզ հետ Գորի էր գալիս...
Ամբողջ աշխարհն այսպես ուրախ էր մեզ հետ,
Երգում էին երկինք, գետին, լեռ ու գետ:
Հայրենիքի սիրո թևով հաղթական
Թռչում էինք դեպի Գորի դյութական...
Հանկարծ երգը թռավ վերև զիլ կանչով,
Մեզ ձայնակցեց շոգեքարշը շչակով.
Հանդիսավոր քայլով դանդաղ մոտեցավ,
Կայարանին ողջույն տվեց, կանգ առավ:
Ու փոթորկվեց այդ ժամանակ ամեն ինչ,
Վագոններում՝ եռ ու զեռ էր, ծափ ու ճիչ...
Ինչպես գարնան ջրվեժները շառաչուն,
Դուրս թափվեցինք ջոկատներով մեր խնդուն
Դեպի քաղաքն այս մրգառատ Քարթլիի,
Դեպի տունը՝ Սոսոյի մեծ կյանքով լի:
Մենք մեր ձայնից առաջ անցնել ենք ուզում,
Ամեն աղյուս այստեղ սրտներս է հուզում...
Վազքով հասանք ու կանգ առանք զմայլված,
Հին տնակի նոր պատկերով կլանված:
Ահա՛, ահա՛, տունն ամենքիս սրտին մոտ,
Այստեղ բացվեց մեր առավոտն արևոտ,
Այստեղ խաղաց, աճեց Ստալինն իմաստուն,
Որ ջերմ սիրով լցնի ամեն մարդու տուն,
Որ խավարից տանի դեպի լույս գալիք,
Որ չխամրի ծաղկած և ո՛չ մի մանկիկ...
Այնքա՞ն բուռն է հրճվանքը իմ այս պահին,
Որ դժվար է շարունակել նամակն իմ:
Երբ որ սրտիս հուզումները դադարեն,
Այն ժամանակ ես ձեզ շատ բան կգրեմ...



# ԻՆՉՊԵՍ ՕԳՆԵՑԻՆ

*Ժ. ՄԱՐԳԱՐՅԱՆ*

*Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ*

*Երևանի 65-րդ դպրոցի հինգերորդ «ա» դասարանի աշակերտները պատրաստվում էին տարեվերջի քննություններին։ Միայն անհոգ էր Նորիկը։ Նա խաղով տարված, հաճախ մոռանում էր աշակերտի ամենահիմնական անելիքը՝ դաս պատրաստելը։ Նա չէր կարողանում տանը երկար պարապել։ Բավական էր, որ բակում երևար նրա հասակակիցներից մեկն ու մեկը, իսկույն տանից դուրս էր թռչում։ Նորիկը դասերը մտաբերում էր միայն այն ժամանակ, երբ նրան հիշեցնում էին։ Սկզբում դա մայրն էր անում, իսկ երբ նա աշխատանքի անցավ, նրան ոչ ոք չփոխարինեց։ Նորիկն իրեն ավելի ազատ զգաց և երկրորդ կիսամյակում սկսեց ծուլանալ։*



Երևանի 65-րդ դպրոցի 5ա դասարանի ջոկխորհրդի նիստում քննարկում են Նորիկ Եղիազարյանի հարցը. նա «երկուս» է ստացել: Նիստին մասնակցում է դաստիարակչուհի Թամարա Հովսեփյանը: Նիստը վարում է ջոկխորհրդի նախագահ Ռուդիկ Խաչատրյանը (աջից 3-րդը):

*Նա ամենից ավելի դժվարանում էր աշխարհագրության առարկայից։ Պետք է անգիր աներ աշխարհագրական շատ անուններ և այդ բոլորը քարտեզի վրա ցույց տար։*

*Նորիկի ծուլությունն անհանգստացրել էր ջոկատի պիոներներից շատերին։ Նրանց ջոկատը դրուժինայի առաջավոր ջոկատներից էր։*

*— Ձեր ջոկատը լավ է աշխատում, եթե տարին փակեք առանց «երկուսի», ապա մյուս տարի ջոկատը կանվանակոչենք Սովետական Միության Հերոսներից մեկի անունով,— ասել էր մի օր ընկեր Հովհաննիսյանը։*

*Այժմ պիոներները լավ էին հիշում դըպրոցի ավագ ջոկատավարին տված խոստումը։ Նրանք բոլորն ուղղել էին իրենց «երկու» գնահատականները, դարձել առաջավորներ, իսկ Նորիկը ծուլանում էր։*

*— Ի՞նչ անել,— մտածում էին պիոներները։*

*Մի անգամ, դասամիջոցին ջոկատի խորհրդի նախագահ Ռուդիկ Խաչատրյանը մոտեցավ Նորիկին։*

*— Դասերից հետո կըգաս պիոներական սենյակ, ջոկատի խորհրդում քո հարցն ենք քննելու,— ասաց նա։*

*Դա շփոթեցրեց Նորիկին։ Նա սկզբում ոչինչ չկարողացավ ասել, իսկ հետո հազիվ թոթովեց.*

*— Ինչո՞ւ...*

*Նա ուզում էր ասել, որ ինքը անկարգություն չի արել։ Բայց արդեն ուշ էր։ Ռուդիկը դասարանից դուրս էր եկել։*



*Երբ Նորիկը պիոներական սենյակ մըտավ, հանդիպեց ջոկատի խորհրդի անդամներին և իրենց դաստիարակ ընկեր Հովսեփյանին։ Նրան առաջարկեցին նստել։ Նա նստեց։*



Ջոկխորհրդի անդամները պարապում են Նորիկ Եղիազարյանի հետ: Նկարում՝ (ձախից աջ) Ն. Եղիազարյանը, Արամ Գրիգորյանը, Ռուդիկ Խաչատրյանը և Սուրիկ Ռաֆայելյանը պարապմունքի ժամին:

*Տիրեց լռություն։ Բոլորի հայացքները դարձան Նորիկի կողմը։*

*«Ի՞նչ եմ արել», մի անգամ էլ մտածեց Նորիկը։*

*Նրա մտածմունքն ընդհատեց Ռուդիկը, որը տեղից բարձրանալով հարցրեց.*

*— Նորի՛կ, դու սիրո՞ւմ ես մեր ջոկատը։*

*Նորիկը երբեք այդպիսի հարց չէր սպասում։ Էլ ի՞նչ պիոներ, որ չսիրի իր ջոկատը։ Բայց ինչի՞ համար է խորհրդի նախագահի այդ տարօրինակ հարցը։*

*Մինչ նա այդպես էր մտածում, Ռուդիկը կրկին հարցրեց.*

*— Ասա՛, սիրո՞ւմ ես...*

*— Ի՞նչ խոսք, որ սիրում եմ,— վերջապես պատասխանեց Նորիկը։*

*— Երդյոք մտածե՞լ ես մեր ջոկատի պատվի մասին։ Լավ պիոներն այդ մասին մտածում է։*

*— Այո, մտածել եմ, ջոկատի պատիվը պետք է բարձր պահել,— հիշեց նա ջոկատավար ընկեր Ջանիկյանի խոսքերը։*

*— Իսկ եթե լինի մեկը, որ ցանկանա մեր ջոկատի պատիվն արատավորել, քո կարծիքով ինչպե՞ս պետք է վարվել նրա հետ,— այս անգամ հարցրեց ջոկատավարը։*

*— Նրան պետք է խայտառակել։*

*— Լավ, իսկ երբ ջոկատում բոլորը լավ են սովորում և միայն մեկն իր ծուլության պատճառով խանգարում է ընդհանուրի աշխատանքը. ի՞նչ ես կարծում, նա ջոկատի պատիվը չի՞ արատավորում։*

*Նորիկը գունատվեց։ Նրա համար պարզ դարձավ, որ ինքն իրոք ծուլացել է և ջոկատի պատվի հետ խաղացել։*

*Այնուհետև խոսեց դաստիարակը։ Նա ասաց, որ դեռ ուշ չէ, Նորիկը կարող է հասնել իր ընկերներին։ Հարկավոր է միայն աշխատել։ Նորիկն ուշադրությամբ լսում էր։ Երբ նա դուրս եկավ պիոներական սենյակից, հուզմունքից քրտնել էր։*

*— Այժմ եկեք մտածենք, թե ինչպես նրան օգնենք,— Նորիկի գնալուց հետո ասաց ջոկատի խորհրդի նախագահը։ Բոլորը հայտնեցին իրենց կարծիքները։ Իսկ հետո որոշեցին Նորիկի հետ պարապել։*

*Ջոկատի խորհրդի նիստը վերջացավ։*



*Տանը, սեղանի մոտ նստած Նորիկը թերթում էր աշխարհագրության գիրքը։ Նրա հայացքի առաջ, մեկը մյուսի ետևից վազում էին աշխարհագրական անունները։ Նրանք չափազանց հեշտ էին, քանի դեռ դասագիրքը թերթում էր. բայց բավական էր, որ Նորիկը փակեր դասագիրքը, կարծես դիտավորյալ, բոլորն էլ չքանում էին։ Նա ձանձրանում էր։ Մի քանի անգամ նույնիսկ ուզեց դուրս գալ բակ և վերսկսել իր ամենօրյա խաղերը, բայց միշտ էլ հիշելով երեկվա խորհրդի նիստը, տեղից չէր շարժվում։*

*Դուռը բախեցին։*

*— Մտեք,— ասաց նա։*

*Ներս մտան խորհրդի անդամները։*

*«Չլինի՞ եկել են դարձյալ խորհրդի նիստ անցկացնելու», անցավ նրա մտքով։ Նորիկը մի կողմ հրեց դասագիրքը և ընկերներին հրավիրեց նստելու։*

*— Դու դրանք իզուր ես հավաքում, մենք եկել ենք հենց աշխարհագրություն պարապելու, նայի՛ր, քարտեզ ենք բերել,— ասաց Սուրիկը և կիսագնդերի քարտեզը փռեց սեղանի վրա։*

Նորիկի դեմքը պայծառացավ: «Ի՜նչ լավ է, որ տղաները եկել են օգնելու, այժմ ամեն բան հեշտ կգնա», մտածեց նա:

Բոլորը նստեցին, Ռուդիկը ձեռքի փոքրիկ ցուցափայտը հանձնելով Սուրիկին ասաց.

— Սուրի՛կ, դու առաջինն սկսիր:

— Այսօր կրկնում ենք «Առաջին շուրջերկրյա ճանապարհորդությունը» նյութը: Հնում գիտնականները միայն այն ժամանակ վերջնականապես համոզվեցին, որ երկիրը կլոր է, երբ ավարտվեց ծովագնաց Մագելլանի առաջին շուրջերկրյա ճանապարհորդությունը,— սկսեց Սուրիկը:

Նա մանրամասն պատմեց այն բոլոր վայրերի մասին, որով անցել էր անվեհեր ծովագնացը: Նա խոսում էր հանգիստ, առանց շտապելու: Քարտեզի վրա մեկ առ մեկ ցույց էր տալիս այն բոլոր տեղերը, որոնց մասին խոսում էր: Նա իր հայացքը չէր հեռացնում Նորիկի դեմքից և առաջ էր անցնում միայն այն ժամանակ, երբ նրա դեմքի արտահայտությունից հասկանում էր, որ նա նյութն ըմբռնել է:

Հետո սկսեց պատմել Արամը. իսկ երբ հերթը հասավ Նորիկին, նա արդեն ամեն բան գիտեր:

Այդպես մի ամիս շարունակվեց: Տղաները մյուս առարկաների կրկնությունների ժամանակ էլ նրան օգնեցին: Եվ երբ սկսվեցին քննությունները Նորիկը բոլոր առարկաներից լավ գնահատականներ ստացավ:

# ԲԱԽՏԻ ԵՏԵՎԻՑ

(Հեքիաթ)

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ



Հեռավոր Աֆրիկայում ապրում էին ծերունի Մահմուդը, նրա պառավ կինը՝ Ֆաթիման և որդին՝ երիտասարդ Ֆարուկը: Ապրում էին Նեղոս գետի բարեբեր ափին ծվարած եգիպտական մի փոքրիկ գյուղում՝ ամեն օր անիծելով իրենց սև բախտը: Եվ ինչպե՞ս չանիծեին, երբ կիզիչ արևի տակ արյունքրտինք էին թափում, մշակում հողը, բայց իրենց տաժանակիր աշխատանքի պտուղը՝ բերքի մեծ մասը տանում ու վայելում էին ծույլ ու վաշխառու կալվածատերն ու պետական հարկահավաքը, իսկ իրենց բաժին էր ընկնում միայն կարիքն ու թշվառությունը:

— Է՜յ, անիրավ աշխարհ, ե՞րբ ենք մեր հալալ աշխատանքի տերը դառնալու,— աչքերը երկինք հառած հաճախ բողոքում էր ծերունի Մահմուդը:

Մի օր էլ ծերունի Մահմուդի աչքերը հիվանդացան. նա աշխատանքի անընդունակ դարձավ: Եվ որովհետև ակնաբույժ չըկար, Մահմուդը փորձեց տնային դեղերով բուժել աչքերը: Սակայն անօգուտ անցավ: Հետզհետե սաստկացավ աչքերի ցավը, ավելի վատացավ տեսողությունը և ծերունին ամբողջովին զրկվեց արևի լույսից...

— Խավարե՜ց արևս, Ֆաթիմա՜... Արևի աշխարհում մի փոքրիկ շողք էլ չմնաց ինձ համար...—հոգոց հանելով խոսեց Մահմուդը:

Ֆաթիման ոչինչ չպատասխանեց, մխիթարական ոչ մի խոսք չգտավ ամուսնուն ասելու։ Գլխաշորի ծայրով սրբեց ոսկրացած այտերի վրայով հոսող արցունքներն ու տըխուր մտքերով տարված՝ դանդաղ շարունակեց ձեռքի կարը։

Մայրը որդու՝ Ֆարուկի հարսանեկան շապիկն էր կարում։

Նրանք պատրաստվում էին ամուսնացնել Ֆարուկին։

— Աչքերիս լույսը չհանգած էլ, այս աշխարհում ես օր ու արև չտեսա, Ֆաթիմա՛,— ավելացրեց ծերունին,— է՜յ ֆելլահի անիրավ բախտ...

Պառավ Ֆաթիման անխոս շարունակում էր կարել իր որդու հարսանեկան շապիկը։ Գուցե իրենց միակ որդին բախտավոր լինի և իրենք էլ մխիթարվեն նրանով...

— Շապիկն ես կարո՞ւմ,— մի պահ լուռ մնալուց հետո հարցրեց կույրը՝ իր մնջացած պառավին խոսեցնելու համար։

— Այո, վերջացնում եմ. միայն կոճակներն են մնացել,— դժկամ պատասխանեց Ֆաթիման։

— Կոճակնե՞րը... Կոճակները մի՛ կարի, Ֆաթիմա,— երկյուղով զգուշացրեց Մահմուդը.— կոճակները պետք է կարի մի բախտավոր մարդ, որ մեր տղան էլ մեզ նման անբախտ չլինի... Հին օրենք է՝ հարսանեկան շապկի կոճակները բախտավոր մարդը պետք է կարի... Ես այդ հին օրենքը խախտեցի և բախտը չմտավ մեր օջախը։ Գնա՛, Ֆաթիմա, գնա՛ փնտրիր, բախտավոր մարդ գտիր և խնդրիր, որ նա կարի մեր Ֆարուկի շապկի կոճակները...

Եվ պառավ մայրը ճանապարհ ընկավ՝ բախտավոր մարդ փնտրելու համար։

Երեք օր ու երեք գիշեր թափառեց փոշոտ ճամփաներով, եղավ գյուղերում, մոտեցավ Գիզեի բուրգերին այցի եկող մարդկանց, բայց ոչ ոք չհամաձայնեց կարել կոճակները... Ամեն մեկն ուներ իր վիշտը և ամեն մեկը փնտրում էր իր բախտը...

Այնտեղ նա հանդիպեց շռայլորեն հագնըված եվրոպացի կանանց, պերճաշուք տիկինների, լորդերի, որոնք ուրախ ծիծաղում էին։ Երևի այդ հարուստ լորդերն ու լեդիները երջանիկ էին, բայց նրանք էլ արհամարհանքով մերժեցին պառավի խնդրանքը։

Ֆաթիման հուսահատ վերադարձավ իր ծերուկի մոտ և խոր վշտով պատմեց այդ բոլորը։

Ձեռքի համրիչն արագ քաշելով, Մահմուդը լուռ ու դժգոհ լսեց իր կնոջ պատմածները։

— Գնա՛, Ֆաթիմա՛, նորից գնա՛, քառասուն օր ու քառասուն գիշեր, գնա՛ Նեղոսի ափերով,— ասաց նա,— գնա՛ և գտի՛ր բախտավորին, որ մեր որդին էլ ծանր աշխատանքում, աղքատության մեջ չկորցնի իր աչքի լույսը...

Եվ Ֆաթիման նորից գնաց... Քառասուն ցերեկ ու քառասուն գիշեր ման եկավ գետի ափերով, եղավ ֆելլահների աղքատ խրճիթներում. սակայն թշվառության ու կարիքի մեջ ընկճված գյուղացիները հրաժարվեցին մոր խնդրանքը կատարել։

— Մենք էլ ենք փնտրում մեր բախտը, նույնիսկ Մեքքա գնացինք, բայց չկարողացանք մեր բախտը գտնել,— պատասխանեցին նրան։

Ֆաթիման նորից վերադարձավ և պատմեց իր կույր ամուսնուն, նկարագրելով թե ինչպիսի դժբախտ մարդկանց էր հանդիպել այդ քառասուն օրվա ընթացքում...

Ֆաթիմայի պատմածները լսելուց հետո, կույրը նորից պահանջեց.

— Գնա՛, Ֆաթիմա, այս անգամ էլ գնա՛ մեծ քաղաքները... Այնտեղ կան մարմարակերտ պալատներ. այդ պալատներում ապրում են հուրիներ. խնդրի՛ր, աղաչի՛ր նըրանց... Կոճակ կարելն ի՞նչ է որ...

Եվ մայրը կրկին ճամփա ընկավ՝ մեծ քաղաքներում իր որդու բախտը որոնելու համար։

Նա առաջին անգամն էր մտնում քաղաք և կարծում էր, որ քաղաքում բոլոր մարդիկ շքեղ պալատներում են ապրում, բոլորն ուրախ ու երջանիկ են։

Բայց ահա, երբ նա մտավ քաղաքի ծայրամասը, աղքատության մեջ կորած բազմաթիվ խրճիթներ, բազմաթիվ հիվանդ ու անօգնական երեխաներ ու ծերունիներ տեսավ։ Նա մոտեցավ գլխավոր փողոցին և կանգ առավ մի կապտագմբեթ մզկիթի առաջ։

Մզկիթի կողքից բարձրացող սպիտակ մինարեի բարձունքից մուեզզինը կերկերուն



*ձայնով երգում էր, աղոթքի կանչում հավատացյալներին և փառաբանում ալլահի մեծությունն ու գթասրտությունը։*

*— Ալլա՜հ էքպեր, ալլա՜հ էքպեր…*

*Իսկ մինարեի ներքևում, մզկիթի առաջ տասնյակ ոսկրացած ձեռքեր ողորմություն էին խնդրում։ Նրանց մեջ կային և՛ կույր ծերունիներ, և՛ վտիտ, մահամերձ երեխաները գրկներին ջահել կանայք, որոնց ամուսինները զոհվել էին ռազմի դաշտում, և՛ քաղցից կմախքացած անչափահասներ… Եվ պատերազմի երիտասարդ հաշմանդամներ…*

*Մայրը անիծելով պատերազմն ու՛ կարիքը՝ իր վերջին փողերը տվեց նրանց և վճտաբեկ քայլերն ուղղեց առաջին իսկ հանդիպած պալատը, որի առաջ ցայտաղբյուր էր բխում։ Գեղատեսիլ շենքը շրջապատված էր հովհարաձև արմավենիներով ու սլացիկ նոճիներով։*

*Սակայն մորը ներս չթողեցին պալատ։ Հրեցին ու ասացին, որ պալատում ապրող բախտավոր հուրիների մատները շատ են նուրբ և չեն կարող հասարակ, հողագործ մարդու կոպիտ ու կեղտոտ շապկի կոճակները կարել։ Նույնիսկ նրանք իրենց ամուսինների շապիկների կոճակները չեն կարում, թեև առանց դրան էլ նրանք բախտավոր են…*

*Հույսը չկտրելով՝ մայրը գնաց երկրորդ, երրորդ, չորրորդ պալատը։*

*Նրան ծաղր ու ծանակի ենթարկեցին ու մերժեցին ամեն տեղ, բոլոր պալատների ազնվաշուք բնակիչները… Նույնիսկ մի անգլիացի, թե ամերիկացի տիկին լուսամուտից ցասումով գոռաց.*

*— Հեռացե՛ք այստեղից, մի՛ կեղտոտեք մեր մարմարե աստիճանները…*

*Մայրը մոտեցավ շուկային։ Փոքրիկ ծածկի տակ, սպիտակ շապիկով, և լայն, սպիտակ մորուքով մի ծերունի բախտ էր գուշակում՝ իր առաջ փռված շորի վրա շաղ տալով գույնզգույն հուլունքները։*

*Նրա դիմաց կանգնել էր մշուշոտ աչքերով մի պառավ կին, որ ուզում էր իմանալ, թե պատերազմի ժամանակ Աֆրիկայի անապատներում անհետ կորած որդին արդյոք կենդանի՞ է։*

*Ծերունին գուշակում էր։ Մինչդեռ նրա մոտ կանգնած մի ուրիշ մայր աղոթում էր, որ այլևս պատերազմ չլինի և մայրերը չկորցնեն իրենց զավակներին, որ ջահել հարսները չկորցնեն իրենց ամուսիններին ու երեխաները որբ չմնան…*

*Ցաթիման խոր վշտով դիտում էր կարիքի և թշվառության մեջ կորած մարդկանց ու տխուր մտածում. «Ուրեմն ինձ նման*

դժբախտ, ինձ նման բախտ փնտրողներ աշխարհում շատ կան։

Նա վերադարձավ ամուսնու մոտ, պատմեց ինչ որ տեսել էր մեծ քաղաքում, պատմեց սովածների ու թշվառների, պատերազմի զոհերի ու հաշմանդամների մասին, պատմեց պալատներում ապրող մարդկանց դաժանության մասին։

Կույրը մռայլվեց. նա կնոջը դառնալով պահանջեց.

— Պետք է գտնել, Ֆաթիմա՛, անպայման պետք է գտնել մեր որդու, մեր ապագայի բախտը... Եթե հարկավոր լինի, յոթն անգամ յոթը տարի պետք է թափառել աշխարհում, բայց անպայման գտնել, գտնել բարի մարդկանց, որ համաձայնեն կարել կոճակները։ Գնա՛ մեծ սֆինքսի մոտ, այնտեղ ապրում է մեզ նման չքավոր, ալեոր մի գիտուն... Նա անպայման կիմանա բախտի ճամփան. գնա՛ Ֆաթիմա...

Եվ որդու երջանկությունը փնտրող մայրը յոթ ցերեկ ու յոթ գիշեր քայլեց Աֆրիկայի ավազուտներով, հասավ մեծ սֆինքսին, գտավ ծերունի գիտնականին, պատմեց ամեն ինչ և խնդրեց ցույց տալ այն ճանապարհը, որ տանում է բախտավոր ու բարի մարդկանց աշխարհը, որոնք հոժարակամ կկարեն իր որդու շապկի կոճակները և կբախտավորեցնեն իրենց։

Վշտահար մորը լուռ լսելուց հետո՝ ծերունի գիտնականը գլուխը վեր պահեց և դեմքը դեպի հյուսիս դարձրեց։ Իմաստնացած հայացքով նա մի պահ անխոս դիտեց երկնակամարը, ապա ձեռքը առաջ պարզելով՝ հանդիսավոր ասաց.

— Գնա՛ այն կողմը, դժբախտ կին և կկատարվի քո մայրական ցանկությունը։



Այնտեղից է ծագում աշխարհի բոլոր մարդկանց բախտն ու երջանկությունը... Այնտեղ, Կրեմլում է ապրում աշխարհին խաղաղություն և երջանկություն պարգևող մեծ իմաստունը... Այնտեղ ոչինչ չեն մերժի քեզ... Գնա՛... Թող Հյուսիսային աստղը լինի քո ուղեցույցը...

Ու մայրը, որդու հարսանեկան շապիկը ձեռքին՝ սկսեց հաստատուն քայլերով առաջանալ ծերունու ցույց տված լուսե ճանապարհով...

## Պատանի ճանապարհորդի օրագրից



Անցյալ տարի հուլիսին պիոներական մի ջոկատ Երևանից ճանապարհվեց Զանգեզուր՝ հայրենի երկիրն ուսումնասիրելու նպատակով: Պատանի ճանապարհորդներն անցան դժվարանցանելի ճանապարհներով, խորը կիրճերով, բարձրաբերձ լեռնանցքներով:

Նրանք տեսան Զանգեզուրի չքնաղ բնությունը, գյուղերը, քաղաքները, հանքավայրերը, գործարանները: Հավաքեցին հանքաքարերի, բույսերի նմուշներ, միջատներ, լուսանկարեցին բնության գեղեցիկ տեսարանները: Պատանի ճանապարհորդներից ամեն մեկը իր օրագրում գրի էր առնում ստացած տպավորությունները:

Տպագրում ենք պատանի ճանապարհորդներից մեկի օրագիրը:

## Կապույտ ՍԵՎԱՆԻ ափերով

Հուլիսի 4: *«ԶԻՍ 51» ավտոմեքենայով սլանում ենք Քանաքեռի սարալանջով: Մոտ երկու ժամ հետո անցանք Ն. Ախտա գյուղը: Անհամբեր նայում ենք հորիզոնին: Շուտով պիտի երևա Սևանի չքնաղ լիճը:*

*— Սևա՜նը, Սևա՜նը,— լսվեցին ուրախ բացագանչություններ:*

*Մեղմ ծփում են լճի վճիտ ջրերը: Դիտում ենք Զանգվի ելքը Սևանից: Այստեղ կառուցված է ստորերկրյա էլեկտրակայանը՝ Սևանգէսը:*

*Կարճատև հանգստից հետո ուղևորվում ենք դեպի Նոր Բայազետ, ապա շտապում ենք Մարտունի, ուր պետք է գիշերենք: Ավտոմեքենան մեզ տանում է Սևանի խաղաղ ափով: Աջ կողմում պսպղում է Սպիտակասարի ձյունապատ կատարը: Գեղամա լեռների լանջերին նստել են կոլխոզային գյուղերը:*

## ՀԱՅՈՑ ՁՈՐԻ ԼԵՌՆԱՆՑՔՈՎ

Հուլիսի 5: *Առավոտյան գնացինք Մարտունու նավահանգիստը: Սևանի կոհակները մեղմ օրորվում են տախտակամածի սյուների մոտ: Ճանապարհվելուց առաջ մի պտույտ կատարեցինք Մարտունու փողոցներով: Կենտրոնական մասում փռված է կանաչազարդ բուլվարը: Բուլվարի շուրջը շարված են բազմաթիվ նորակառույց շենքեր: Եղանք Մարտունու ձկան կոնսերվի գործարանում և հետաքրքրությամբ դիտեցինք բանվորների աշխատանքը, մեքենաները:*

*Ուղևորվում ենք դեպի Միկոյան: Ճանապարհն անցնում է ցորենի ոսկեգույն արտերի և ծխախոտի կանաչ դաշտերի միջով: Ղեկավարը մեզ ցույց է տալիս ճանապարհի աջ կողմում բարձրացած Մագինա լեռը: Դա հանգած հրաբուխ է: Նրա գագաթին մի գեղեցիկ լիճ կա:*

*Մեր մեքենան անցնում է ձորերով, բարձրանում զառիթափ լանջերով, սլանում Վարդենիսի լեռների լանջերով: Օրն արևոտ է, պարզ: Քիչ առաջ մեր տեսած ու անցած հսկա լեռներն այժմ մեր ետևում մնալով՝ փոքր բլուրների են նմանվում: Կանգ առանք հռչակավոր Սալով աղբյուրի մոտ: Ջուրն այնքան սառն է, որ կում-կում ենք խմում:*

*Վերջապես մենք գտնվում ենք Հայոց ձորի (Սելիմի) լեռնանցքի կատարին, ծովի մակերևույթից 2410 մետր բարձրության վրա: Մեր աչքերի առաջ փռված են հյուսիսում՝ Սևանի կանաչավետ ավազանը, հարավում՝ Դարալագյազի չոր, ապառաժոտ ձորը, իր օազիսանման գյուղերով:*

*Մեքենան հանդարտ իջնում է Հայոց ձորի լեռնանցքի խիստ զառիթափ զիգզագներով: Եղեգիս գետի ափով շուտով հասանք Միկոյան:*

## ՈՐՈՏԱՆԻ լեռնանցքում

Հուլիսի 7: *Միկոյանը այգիներով շրջապատված գեղեցիկ ավան է: Նորակառույց տները և փողոցները նրան փոքրիկ քաղաքի տեսք են տալիս: Կանաչների մեջ փայլում են Լենինի և Ստալինի բրոնզապատ արձանները: Միկոյանի ճաշարանում ճաշելուց հետո ուղևորվում ենք դեպի Բազարչայ: Ճանապարհի աջ կողմը, խոր ձորում, հոսում է Արփա գետը: Հանգստանալու համար կանգ ենք առնում ուռենիների ստվերում: Ով լող գիտի լողանում է Արփա գետի սառը ջրերում:*

*Ավտոմեքենան բարձրանում ու մտնում է Զանգեզուրի լեռների վրա գտնվող Որոտանի (Քոչբիկի) բարձրաբերձ լեռնանցքը: Գրնալով եղանակը ցրտում է: Մենք հագնում ենք մեր տաք հագուստները: Լեռնանցքի ամենաբարձր կետում (ծովի մակերևույթից 2344 մետր) սաստիկ քամուց, անձրևից ու սառնամանիքից, մենք պաշտպանվեցինք ադեալներով ու ներքնակներով: Շատ ծիծաղելի տեսք ունեինք: Մեքենան սկսեց իջնել դեպի Բազարչայ գյուղը: Անձրևը դադարեց, քամին հանդարտվեց: Դուրս եկանք ծածկոցների տակից:*

Բազարչայի կանաչ սարերը բոլորովին նման չեն Դարալագյազի չոր, ապառաժոտ լեռներին։ Կոլխոզային նախիրը վերադառնում էր գյուղ։ Լսվում էր ցեղային կովերի բառաչը։ Աղջիկները ֆուրգոններում դարսած խոտի դեզերի վրա նստած ուրախ երգով տուն էին վերադառնում։ Անցնելով Բազարչայի միջով, մենք կանգ առանք գիշերելու մոտակա Բորիսովկա գյուղում։

## Բորիսովկայի կոլխոզում

Հուլիսի 10: Բորիսովկայի կոլխոզը Հայաստանի ամենաառաջավոր անասնաբուծական կոլխոզներից մեկն է։ Առավոտյան դիտեցինք կոլխոզի շենքերը, գոմերը։ Գոմերն ընդարձակ են, հարմար, մաքուր, լուսավոր։ Հորթանոցներն առանձին են։ Այնտեղ ամեն մի հորթի համար կախված է կաթի ծծակ. ամեն մի կովի կողքին կա ավտոմատ ջրաման։ Կովն իր դնչով սեղմում է տակը, ջրամանը լցնում ջրով ու խմում։ Գոմերից ոչ հեռու՝ ոչխարների խուզարանն է։ Այստեղ կոլխոզնիկներն էլեկտրական խուզիչով խուզում են ոչխարներին։ Մեզ ուղեկցող կոլխոզնիկը հպարտությամբ պատմում էր իրենց կոլխոզի հաջողությունների մասին։

## Շաքիի ջրվեժը, պատմական գյուղ

Հուլիսի 12: Մենք շտապում ենք Սիսիան։ Ինձ ամենից շատ հետաքրքրում է Շաքիի ջրվեժը։ Հասանք պատմական Անգեղակոթ գյուղը, ուր 1699 թվականին հայերի ժողովը որոշել է դիմել ռուսական թագավոր Պետրոս առաջինին՝ խնդրելով Հայաստանն ազատել պարսիկների ու թուրքերի լծից։ Շարունակում ենք ճանապարհը։ Ահա երևում է շրջանային կենտրոնը՝ Սիսիանը։ Որքա՜ն նոր տներ, շենքեր կան* այստեղ։

Առավոտյան Որոտան գետի ափով հասանք Շաքիի հիդրոէլեկտրակայանը։ Գլխավոր ինժեներն ուրախությամբ մեզ պատմեց էլեկտրակայանի մեքենաների աշխատանքի մասին։ Դա մեզ համար ֆիզիկայի գործնական դաս էր։ Հետո գնացինք դիտելու Շաքիի ջրվեժը։ Մոտ 15 մետր բարձրությունից ջուրը թափվում է ներքև, խփվում ժայռերին, շառաչում և ջրի փոշիով լցնում ձորը։ Երբ արեգակի շողերն ընկնում են ջրվեժի վրա՝ ջրի փոշին ծիածան է կապում ջրվեժի դիմաց։ Որքա՜ն գեղեցիկ է այս ամենը։ Վերադարձին հիդրոկայանի պարտեզում մի սև, թունավոր օձ սպանեցինք և սպիրտով ամանի մեջ դնելով վերցրինք մեզ հետ՝ դպրոցին հանձնելու համար։

## Գորիս քաղաքում

Հուլիսի 15: Մութն ընկավ։ Գնում ենք Գորիս։ Հանկարծ երևաց լույսերով ողողված Գորիս քաղաքը։ Գիշերեցինք հյուրանոցում։ Առավոտյան դիտեցինք քաղաքը։ Տեսանք Մեխանիկական գործարանը, որտեղ առանձնապես հետաքրքիր էր մահճակալների նիկելապատումը։ Եղանք Տրիկոտաժի ֆաբրիկայում։ Երիտասարդ բանվորները եռանդով աշխատում էին։ Նրանցից շատերը պլանները գերակատարում են։

Գեղեցիկ են Գորիսի ուղիղ և ծառազարդ փողոցները։ Աքանչելի է քաղաքի կենտրոնում կառուցված աղբյուր-հուշարձանը։ Այդտեղից գնացինք տեսնելու հռչակավոր Խնձորեսկ գյուղը։ Հսկայական ձորի երկու ուղղաձիգ կողերի վրա երևում են բազմաթիվ խորշեր, որ անցյալում մարդիկ փորել են ու բնակվել այնտեղ։ Հիմա կոլխոզնիկները նոր ու հարմար տներ են կառուցել։

Վերադառնալիս եղանք Գորիսի պտղատու ծառերի տնկարանում։ Ելակի թփերի վրա կարմրին էին տալիս հյութալի պտուղները։ Տեսակ-տեսակ խնձորենիների ճյուղերը կռացել էին խոշոր, կարմրադեղին խնձորների ծանրությունից։

Առատ հյուրասիրվելով վերադարձանք Գորիս։

## ԱՅՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ՁՈՐԵՐՈՎ ԵՎ ԼԵՌՆԵՐՈՎ

Հուլիսի 18: Գորիսից Ղափան տանող ճանապարհը ամենագեղեցիկ և ամենավըտանգավոր ճանապարհներից է։ Խճուղին անցնում է անտառի միջով, խոր անդունդի եզրով, իսկ անդունդի հատակին վշշում է գետը։ Հետո ճանապարհը շարունակվում է Բարգուշատի անտառապատ լեռների մի քանի բազուկների վրայով։ Մեքենան մեկ գըլխապտույտ զիգզագներով իջնում է մինչև խորը ձորի խորքը, մեկ էլ նորից հասնում բարձրաբերձ լեռների գագաթների մոտ։ Ստվերախիտ անտառներ են փռված մեր շուրջը։ Անցնելով Շուռնուխ և Արծվանիկ գյուղերը, հասանք Ղափան։ Քաղաքի ասֆալտապատ փողոցներում աշխույժ երթևեկություն կա։ Ղափանը փոքրիկ, արդյունաբերական քաղաք է։ Ունի բազմահարկ տներ, գործարաններ, կինոներ, թատրոն։ Քաղաքի միջով անցնում է Օխչի գետը։

Մենք եղանք Լենինյան պղնձահանքերում և ֆլոտացիոն ֆաբրիկայում։

### ՎԵՐԱԴԱՐՁԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Հուլիսի 23: Միկոյանից ուղևորվեցինք դեպի Երևան։ Անցնում ենք սոցիալիստական աշխատանքի հերոսներով հայտնի Արենի գյուղի միջով։ Որքան մոտենում ենք Նորաշենին, այնքան ավելի շատ են երևում բամբակի փարթամ դաշտերը։ Մեքենան սլանում է ուղիղ և ասֆալտապատ խճուղիով։ Անցնում ենք Գայլի դռներ կոչվող նեղ կիրճով։ Քիչ հետո արդեն գտնվում էինք Հայաստանի տերիտորիայում։ Մոտենում ենք Արարատ ավանին։ Երևում են Ցեմենտի հսկա գործարանի բարձր ծխնելույզները և բանվորական ավանը։ Մենք Արարատյան դաշտում ենք։ Երևում են բազմաթիվ նոր հիմնված ավաններ՝ գեղեցիկ նորակառույց տներով։ Ջուրը վազում է նոր ջրանցքներով։ Մեղմ օրորվում են բարդիների կատարները։ Արարատն ամբողջ հասակով կանգնած է մեր առաջ։ Ճանապարհի երկու կողմում փռված են գյուղեր, խաղողի բերքառատ այգիներ, բամբակենու դաշտեր։ Կոլխոզնիկները եռուն աշխատանքի մեջ են։ Անցնում ենք Արտաշատի փողոցներով։ Այստեղից սկսած մինչև Երևան ճանապարհը գնում է համատարած այգիների միջով։ Վերջապես ահա նա, հարազատ Երևանը։

ՌԱՖԻԿ ՕՀԱՆՅԱՆ
(Մռավյանի անվան դպրոցի աշակերտ)

# ԾԱՂԿԱՁՈՐ

ՍԱՐՄԵՆ

Նկ. Մ. ԱԲԵՂՅԱՆԻ

Ամեն ամառ, այրող շոգին,
Մենք քո ծոցում կենարար՝
Զով անտառում, ծառի շուքին
Նորից գտնում ենք իրար:

Կաղնիների ստվերի տակ
Թիթեռների հետ խաղում,
Հազար գույնի, հազար տեսակ
Վառ ծաղիկներ ենք քաղում:

Նստած ձորում, ուր կարկաչով
Արծաթ առվակն է հոսում,
Երջանկության երգ ու կանչով
Ծաղկեպսակ ենք հյուսում:

Մենք քո սարերն ենք բարձրանում,
Անցնում թե՛ գետ, թե՛ գետակ,
Գագաթներից երկրին նայում՝
Ամպերը մեր ոտքի տակ:

Դու մեզ համար հանգստյան տուն,
Մարմին կոփող մարզարան,
Դու մեր սրտի ուրախություն,
Մեր սիրելի խաղարան:

Երբ գալիս ենք, զվարթ թնդում,
Ուրախանում ես սրտանց,
Երբ գնում ենք, տխրում ես դու,
Ասում՝ «Բարի վերադարձ»:

Ի՛նչ էլ լինի, ո՛ւր էլ գնանք,
Քեզ կհիշենք ամեն օր,
Մեր հարազատ, մեր աննման
Կանաչ աշխարհ Ծաղկաձոր:





# Ամռան լեմքին

Նկ. Ար. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Երբ Արենի բերդի բարձունքից նայում ես շրջապատին, տեսնում ես շուրջդ փռված կանաչազարդ և կարմրավուն բլուրների կըտրտված շերտեր: Դրանց ներքևում տարածվում են Երևանի նոր թաղամասերը՝ Վարդաշենը, Արեշը, Ծաղկանոցը: Գեղեցիկ են այդ թաղամասերը, իրենց ուղիղ փողոցներով, նորակառույց, կղմինդրածածկ փոքրիկ առանձնատներով, որոնք եզերված են դեղձի, ծիրանի և այլ պտղատու ծառերի պարտեզներով:

Հինավուրց Արենի բերդի ստորոտում է գտնվում Երևանի Ստալինյան ռայոնի № 64 լրիվ միջնակարգ դպրոցը, որը կառուցվել է անցյալ տարի: Դա չորս հարկանի տուֆակերտ գեղեցիկ շենք է. ունի լուսավոր, ընդարձակ դասարաններ, ակումբ, գրադարան, բնագիտության, քիմիայի, ֆիզիկայի և ուրիշ կաբինետներ: Դպրոցում կազմակերպված են երգի, պարի, ասմունքի, քիմիայի, ֆիզիկայի, աշխարհագրության, պատմության և այլ ինքնագործ խմբակներ: Այդ խմբակներում ընդգրկված են շատ պիոներներ ու դպրոցականներ: Դպրոցն ունի նաև հողամաս: Այստեղ ամեն օր դասերից հետո, ազատ ժամերին, բնագիտության ուսուցչի ղեկավարությամբ պարապում են պատանի միչուրինականները: Նրանք աճեցնում են պտղատու ծառեր և բույսեր:

№ 64 դպրոցում սովորում են Վարդաշեն, Ծաղկանոց, Հարավային Արեշ թաղամասերի երեխաները: Նրանց մեծ մասը հայրենադարձներ են: Այդ երեխաների հիշողության մեջ դեռ թարմ են հայրենիքից դուրս, արտասահմանյան երկրներում ապրած կյանքի անուրախ պատկերները: Նրանցից շատերը զրկված էին ուսում ստանալու հնարավորությունից: Իսկ մայրենի լեզվով սովորելու մասին նրանք չէին էլ կարող երազել:

Այժմ Սովետական Հայաստանում հայրենադարձ երեխաներն ապրում են ուրախ ու երջանիկ կյանքով, ինչպես սովետական մեր բոլոր երեխաները: Նրանք սովորում են, տիրապետում գիտությանը, պատրաստվում են դառնալու կոմունիզմ կառուցող արժանավոր քաղաքացիներ:

Խմբագրությունն ստացել է № 64 դըպրոցի աշակերտների մի քանի նամակ, որոնց մեջ նրանք պատմում են ամառնամուտին իրենց կատարած դպրոցական և արտադըպրոցական աշխատանքների մասին:

## ԼԱՎ ՊԱՐԱՊԵԼՈՒ ԱՐԴՅՈՒՆՔԸ

*Բացվել էր գարունը: Չնայած, որ բնությունը մեզ էր կանչում, բայց ես ու իմ ընկերները հաճախ էինք հրաժարվում նրա հրավերից: Թողնելով կողմնակի ամեն մի զբաղմունք ու խաղ մենք պատրաստվում էինք տարեվերջի քննություններին: Չորս հոգի էինք՝ ես, Հովսեփյան Արշալույսը, Պարպատյան Շաքեն և Մեյմարյան Ազատուհին: Շաքեն և Ազատուհին հանրահաշվից «3» էին ստանում, իսկ Արշալույսը ռուսաց լեզվից*

*«4»: Ես շարունակ պարապում էի նրանց հետ, իսկ ինչից որ դժվարանում էի, հարցնում էի ուսուցիչներին:*

*— Մենք ամեն օր կես ժամ շուտ էինք դպրոց գնում և կրկնում օրվա դասերը: Վերհիշում էինք նաև այն բոլորը, ինչ որ սովորել էինք ամբողջ ուսումնական տարվա ընթացքում: Ես կազմեցի օրվա կրկնության ռեժիմը: «Կրկնությունը գիտության մայրն է»: Ինչքան ճշմարտություն կա այդ խոսքի մեջ:*

*Դասերը վերջացնելուց հետո մի ժամ էլ պարապում էինք և ապա գնում տուն: Ահա թե ինչպես էինք աշխատում տարեվերջի քննությունները հաջող հանձնելու համար:*

*Շաքեն և Ազատուհին խոսք տվեցին հանրահաշվից «4» ստանալ, իսկ Արշալույսը ռուսաց լեզվից՝ «5»:*

*Եվ մենք հաջողության հասանք: Ես քննությունները հանձնեցի միայն հինգով, իսկ*



Երևանի № 64 դպրոցի 7-րդ դասարանի գերազանցիկ Աստղիկ Տաշչյանը (ձախից) հանրահաշվից պարապում է Շաքե Պարպատյանի և Ազատուհի Մեյմարյանի հետ:

*Շաքեն, Ազատուհին և Արշալույսը՝ «4» և «5» գնահատականներով:*

*ԱՍՏՂԻԿ ՏԱՇՉՅԱՆ*

(№ 64 դպրոցի 7-րդ դասարանի աշակերտուհի)

## ՄԱԹԵՄԱՏԻԿԱՅԻ ՔՆՆՈՒԹՅՈՒՆԸ

*Ես մաթեմատիկան շատ եմ սիրում և այդ առարկայից միշտ էլ ստացել եմ միայն «5» գնահատական:*

*Դասերի ընթացքում շարունակ օգնել եմ իմ այն ընկերներին, որոնք մաթեմատիկայից ետ էին մնում: Օրինակ՝ Հալերյան Ազավնին, Կարապետյան Ռիման և Ղարիբյան Նորիկը չէին հասկանում համեմատություններն և չէին կարողանում խնդիրները լուծել: Ես և մեր ջոկատավար ընկեր Աստղիկ Մխիթարյանը պարապում էինք ետ մնացողների հետ:*



6ա դասարանի աշակերտուհիները պարապմունքի ժամին: Ձախից՝ Աստղիկ Մխիթարյան, Ռիմա Կարապետյան, Վարդուշ Մկրտչյան և Ազնիվ Շիրինյան.

*Մոտենում էին տարեվերջի քննությունները: Ես սկսեցի ավելի լուրջ պարապել: Մաթեմատիկայի ուսուցիչ ընկեր Հ. Ահարոնյանի ղեկավարությամբ կրկնում էինք «համեմատություններ», «տոկոսներ», «թվի միջոցով մասը գտնել», «մասի միջոցով թիվը գտնել» և այլ բաժիններ: Լուծում էինք շատ խնդիրներ և վարժություններ: Մենք գիտեինք, որ մաթեմատիկայից գրավոր քննություն ենք հանձնելու: Այդ մասին մեզ հայտնել էր ընկեր Ահարոնյանը: Գասպարյան Գեվորգը, Նազարեթյան Խաչիկը, Մկրտչյան Վարդանուշը և ուրիշները նույնպես քննությանը լավ էին պատրաստվում:*

*Շուտով եկավ ցանկալի օրը: Ես և իմ ընկերներից շատերը «5» և «4» գնահատականներով հանձնեցինք մաթեմատիկայի քննությունը:*

*ԱԶՆԻՎ ՇԻՐԻՆՅԱՆ*

(№ 64 դպրոցի 6ա դասարանի աշակերտուհի)

# ՄԵՐ ՓՈՐՁԱԴԱՇՏԸ

Մեր դպրոցի շենքը նոր է կառուցված։ Դրա համար էլ այս տարի մենք որոշեցինք բարեկարգել և կանաչապատել դպրոցի շրջակայքը։ Պատանի միչուրինականների խմբակի անդամներն այդ աշխատանքը կատարեցին մեծ սիրով։ Այժմ մեզնից ամեն մեկն ունի ծառերի և ծաղիկների մի շարք, որը ինքն է խնամում։ Լավ են աճել 4-րդ ջոկատի պիոներ Ավետիսյան Մելսիդայի և 5-րդ ջոկատի պիոներ Սիմոնյան Համլիկի խնամած ծառերն ու ծաղիկները։ Դպրոցի շրջակայքում տնկած մոտ վաթսուն դեկորատիվ ծառերն արդեն թփակալել են։

Դպրոցն ունի նաև իր փորձադաշտը, որտեղ տնկել ենք դեղձի, ծիրանի և այլ պտղատու ծառեր։ Ցանել ենք զանազան տեսակի բույսեր։ Նրանց սերմերն աճեցրել էինք բանկաների վրա։ Գարունը բացվելուն պես փորձադաշտը վարեցինք ու պարարտացրինք, ապա ցանկապատեցինք։ Այդ փորձադաշտում մեր խմբակի անդամներից ամեն մեկն ունի իր թումբը և իր պտղատու ծառերը, ամեն մի ծառին փակցված է մի փոքրիկ տախտակ, որի վրա գրված է խնամողի անունը և ջոկատը։ Հույս ունենք, որ մեր փորձադաշտում աճեցրած ճակնդեղը, դդումը, լոբին և եգիպտացորենը լավ բերք կտան։ Թմբերի մի մասը պարարտացրել ենք, իսկ մի մասը՝ ոչ, որպեսզի բույսերի աճելուց հետո տեսնենք, թե ի՞նչ տարբերություն կլինի պարարտացրած և չպարարտացրած հողում աճած բույսերի մեջ։

Մեզ հատկացված ծառերի մի մասն արդեն պատվաստել ենք։ Մեր խմբակի պարապմունքի ժամանակ լսել ենք հետաքրքիր



Կենդանաբանական խմբակի պարապմունքը։ Խմբակի ղեկավար Աղասի Վաղարշակյանը պատմում է նապաստակների մասին։

զեկուցումներ Միչուրինի, Վիլյամսի, Լիսենկոյի կյանքի ու գործունեության մասին։ Մեր խմբակի անդամներ՝ Շադյան Մարին, Տաշչյան Աստղիկը և Մելքոնյան Գրիգորն իրենց տնամերձ այգիներում էլ են ծառեր աճեցնում։

Մենք ուզում ենք այնպես աշխատել, որ արժանի լինենք մասնակցելու պատանի միչուրինականների ռայոնական ու քաղաքային ցուցահանդեսներին։ Մեր խմբակի աշխատանքին օգնում են դպրոցի դիրեկտոր ընկեր Խաչատրյանը, բուսաբանության ուսուցիչ Վաղարշակյանը և ավագ ջոկատավար Պողոսյանը։

ՄԱՐԻ ԲՅՈՒԼԲՅՈՒԼՋՅԱՆ, ԳՐԻԳՈՐ ՄԵԼՔՈՆՅԱՆ, ՇՈՒՐԱ ԱՎԵՏԻՍՅԱՆ

(№ 64 դպրոցի պատանի միչուրինականների խմբակի անդամներ)

# ԱՐՋԻ ԽՐԱՏԸ

(Որսորդի հուշատետրից)

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Քեռիս այգեպան էր։ Ամառ-ձմեռ ապրում էր Առանի ձորում։ Դա մի խոր ձոր էր, որի երկու լանջերին, քերծերի ու ձորակների արանքներում փռված էին կոլխոզի այգիները։

Աշնան մի օր քեռիս այգիներից ինձ ու մորս տեսության եկավ։ Այդ բանն անսահման ուրախություն պատճառեց ինձ։ Ամբողջ օրը չէի հեռանում քեռուս մոտից, խնդրում էի նրան պատմել Առանի ձորի ու կենդանիների մասին։

Քեռիս պատմեց, պատմեց ու հոգնեց։

*— Դե՛, բավական է քո հարցերով ինձ հոգեհան անես, Սուրե՛ն, ավելի լավ է առավոտն ինձ հետ եկ, տանեմ Առանի ձորը, դու ինքդ այնտեղ շատ բան կտեսնես ու կիմանաս։*

*Մյուս օրը կիրակի էր։ Լույսը դեռ չբացված, ես արդեն ոտքի վրա էի։ Արագ-արագ մի բան կերա ու քեռուս հետ դուրս եկա տնից։*

*Մի ոլորապտույտ ճանապարհ գյուղից մեզ տանում էր դեպի ձորը։ Ճանապարհի վրա կռացել էին թզենու ճյուղերը, ծանրաբեռնված հասուն թզով։ Ամեն քայլափոխի հանդիպող մասրենու թփերը նմանում էին կարմիր ծաղկեփնջերի։ Հոնի ծառերից կաթում էր հոնը։*

*Լուսաբացին թռչուններն սկսեցին երգել, ծլվլալ, մի սքանչելի համերգով լցնելով Առանի ձորը։ Թզենու ճյուղերի միջից կղկղում էր մոշահավը։*

*Ներքևում, իր ճչոցով լցնում էր ձորը փոքրիկ բաբաճիզոը։ Դա քիչ երևացող մի թռչուն է, հազիվ ծտի չափ, որը մարդկային աչքից հեռու, թաքստոցից ամբողջ օրը ճչում է.*

*— Բա-բա-ճի՛զո... Բա-բա-ճի՛զո...*

*Եվ այդպես նա ճչում է, մինչև վրա է հասնում խորին գիշերը։*

*
* *

*Արևը դուրս եկավ և իր ոսկեղեն շողերով ողողեց Առանի ձորի ժայռերը, քարերը, ծառերը։ Վարարակն գետը ոլորապտույտ հոսում էր ձորի խորքում։ Քեռիս քայլում էր նեղ կածանով, որն արդեն ծածկվում էր ծառերից թափվող տերևներով, մասրենու հատիկներով և զկեռով։*

*Մի տեղ քեռիս հանկարծ կանգ առավ ու կռանալով սկսեց ուշադիր նայել գետնին։ Ես մոտեցա նրան ու ինքս էլ կռացա։ Կածանի վրայի մանր քարերը մեկ առ մեկ շուռ էին տված և երևում էին փոքրիկ, խոնավ փոսերը։*

*— Այս ո՞վ է քարերը շուռ տվել, քեռի՛,— զարմացած հարցրի ես։*

*— Էլ ո՞վ պիտի լինի, արջն է շուռ տըվել,— պատասխանեց քեռիս։*

*— Արջը՞...— զարմացած ու մի քիչ էլ վախեցած բացագանչեցի ես,— արջն ինչո՞ւ է ճանապարհի քարերը շուռ տվել։*

*— Մրջյուններ գտնելու և ուտելու համար։ Արջը սիրում է մրջյուններ ուտել, թթվաշ են,— պատասխանեց քեռիս ու շարունակեց. —Հենց նոր է արջն այստեղով անցել, մեզնից հեռու չէ, Սուրե՛ն, արի բարձրանանք այս քերծի գլուխը, այնտեղից կտեսնենք նրան։*

*Կածանի մոտ մի քերծ կար։ Մենք մի կերպ բարձրացանք նրա վրա ու տեղավորվելով, աշխատեցինք տեսնել, թե որտեղ է արջը։*

*Առաջինը ես տեսա արջին մի դարավոր ընկուզենու տակ։*

*— Հրեն, հրեն, քեռի՛, հրեն արջը՝ երկու քոթոթի հետ,— ասացի ես ձեռքով ցույց տալով ընկուզենին։*

*
* *

*Մի բրդոտ, սև արջ կանգնել էր հսկայական ընկուզենու տակ։ Նրա շուրջը թռչկոտում էին սիրուն քոթոթներ՝ մեկը մոխրագույն, մյուսը՝ սև։*

*— Եկել են՝ ընկույզ ուտեն,— ասաց քեռիս ու ծխախոտի քսակը հանեց։*

*Նա չէր սխալվել։*

*Քիչ հետո մայր արջը բարձրացավ ընկուզենու վրա և սկսեց թափահարել նրա ճյուղերը։ Ընկույզը կարկուտի նման թափվում էր մի փոքրիկ տափարակի վրա։ Քոթոթներն սկսեցին «հավաքել» ընկույզները։ Սև քոթոթը հավաքածը գցում էր բերանը. ջարդում, կճեպահան անում և արագ-արագ լափում։ Այնինչ մյուսը՝ մոխրագույնը, թափված ընկույզները կուտակում էր մի տեղ։ Մայր արջը ծառի վրայից մերթ ընդ մերթ նայում էր ներքև, թե քոթոթներն ինչ են անում։ Տեսնելով, որ սև քոթոթը ընկույզները միայն ուտում է, նա արագ իջավ ծառից, բռնեց նրան ու մի քանի անգամ թաթով հարվածեց ագահին։ Հետո նորից բարձրացավ ծառը։ Բայց սևուկը խելքի չեկավ ու չխրատվելով մոր ծեծից, ավելի արագ սկսեց լափել ընկույզը։*

*Այս անգամ մայր արջը բարկացած իջավ, բռնեց, մի լավ ծեծեց սևուկին, հետո նրան գրկեց, տարավ դրեց մի սալ քարի վրա, մի ուրիշ քար էլ բերեց, դրեց մեջքին։*

*— Տեսնո՞ւմ ես, ոնց է մայրը խրատում անհնազանդ զավակին,— հազիվ լսելի ձանով ասաց քեռիս։— Արջն էլ դաստիարակելու իր ձեն ունի, բա՞։*

Մայր արջը նորից բարձրացավ ծառը: Քարի տակ դրած սևուկը մռմռում էր, թաթերը անզոր շարժում, որ դուրս գա ծանրությյան տակից, բայց քարը պինդ էր դրված նրա մեջքին:

Մայր արջը ծառի վրայից հաճախ գլուխը թեքում էր ու նայում քարի տակ դրըված քոթոթին: Տեսնելով, որ քոթոթը քարի տակ շատ է տանջվում, նա արագ իջավ ծառից, քոթոթի վրայի քարը վերցրեց, ծանր ու թեթև արեց, մրթմրթալով դեն գցեց, գնաց մի կոճղ բերեց ու դրեց քոթոթի վրա:

իր արածից, սկսեց ուրախ-ուրախ թռչկոտել մոր շուրջը:

Մայր արջը գնաց կոճղի տակից սևուկին հանելու: Կոճղը շուռ տվեց, բայց... սևուկն անշարժ էր: Արջը թաթով հրեց նրան: Սևուկն անշարժ էր: Անհանգստացած արջն ականջը դրեց քոթոթի բերանին, մի քանի վայրկյան ականջ դրեց ու... մի այնպիսի ձայնով ոռնաց, մի այնպիսի ձայնով, որ քար ու ձոր դղրդացին:

— Վա՜յ, տունդ քանդվի արջ... Քոթոթը սատկել է,—գոչեց քեռիս:



— Քարը ծանր էր, արջն էդ էլ վլխի ընկավ. թեթև կոճղ դրեց քոթոթի մեջքին, որ չսատկի,—թանձր ծուխը սև բեղերի տակից բաց թողնելով ասաց քեռիս:

Ես շունչս պահած հետևում էի, թե էլ ինչ կանի մայր արջը: Բայց նա արդեն ծառի վրա էր:

*
* *

Ընկույզը թափելուց հետո, մայր արջն իջավ ծառից: Մոխրագույն քոթոթը մի քանի կույտ ընկույզ էր հավաքել: Նա, երևի գոհ

— Սատկե՞լ է,—ոչ պակաս զարմացած ու վախեցած հարցրի ես:

— Սատկել է, վրայի կոճղը ծանր է, եղել: Հե՜յ, անխիղճ արջ... Իզուր չեն ասել արջի ծառայություն: Այս էլ քեզ արջի խըրատ,—տնքալով, ախ ու վիշ անելով ասում էր քեռիս ու իրար ետևից ծխում:

Ես քարացած նայում էի ներքև: Մայր արջն ատամներով քաշում էր սևուկ քոթոթի ականջներից, լիզում նրան:

Մայրն այնքան լիզեց, գուրգուրեց նր-

*րան, որ քոթոթը շարժեց գլուխը, կենդանության նշաններ ցույց տալով։ Այդ տեսնելով արջը նրան գրկեց ու վազեց դեպի գետը։ Հասնելով գետին, նա քոթոթին կոխեց ջուրը։ Մյուս քոթոթը՝ մոխրագույնը պոչը կտրած հորթի նման պտտվում էր մոր շուրջը, մզզում, մրմնջում...*

*Մի քանի րոպե սեվուկին ջրում պահելուց հետո, մայր արջը նրան հանեց ջրից։ Սեվուկն իրեն թափահարեց, ջրի ցայտեր ցրեց շուրջն ու ամուր կանգնեց ոտքի վրա։ Մայր արջն ու մոխրագույն քոթոթն ուրախացած թռչկոտում էին նրա շուրջը, լիզում, կատակներ անում։*

*Մի ուրախությո՜ւն, մի ուրախությո՜ւն էր սկսվել մոր ու ձագերի մեջ, որ ես ու քեռիս էլ նայում էինք և ուրախանում։*

*Քիչ հետո երեքն էլ հեռացան գետի մոտից, մոռանալով ընկուզենին ու ընկույզը։*

*— Վա՜յ, քու տունը քանդվի, ա՜րջ, բա էդպես էլ խրատ կլինի, քիչ մնաց քոթոթին սպաներ,— ասում էր քեռիս։*

*Մենք շարունակում էինք նստած մնալ քերծի վրա։ Արեն արդեն բարձրացել էր Առանի ձորի գլուխը։ Ես երկար ժամանակ այդ անմոռանալի տպավորության տակ էի։*

# ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԱՆ

*Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ Նկ. Մ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*

Քառասուն տարի առաջ, 1911 թվի հունիսի 20-ին, 72 տարեկան հասակում, վախճանվեց մեծանուն մանկավարժ, տաղանդավոր գրող, հայ ուսուցիչների ու մանուկների ամենասիրելի բարեկամ Ղազարոս Աղայանը։

Աղայանը ծնվել է 1840 թվի ապրիլի չորսին։ Իր նախնական կրթությունը ստացել է Շամշուլդա գյուղի քահանայի մոտ և այդտեղ ցույց տվել արտակարգ առաջադիմություն։ 1852 թ. նա գնում է Թիֆլիս և հետևյալ տարին ընդունվում Ներսիսյան դպրոց. սակայն այս դպրոցն էլ չի բավարարում Աղայանին. «որովհետև ինչ որ ավանդվում էր այդտեղ, ես արդեն գիտեի», գրում է նա։

Այնուհետև յոթ տարի նա չի սովորում. բայց լարված կերպով պարապում է ինքնակրթությամբ և ապա մտնում է Թիֆլիսի տպարաններից մեկի ձուլարանը որպես աշակերտ։ Այստեղ Աղայանը ոչ միայն ձուլող ու գրաշար բանվոր է դառնում, այլև կապվում է գրքի ու մամուլի հետ և մեծ ծրագրեր է մշակում իր ապագա գործունեության համար։

Երիտասարդ Աղայանը երազում էր՝ ինչ գնով էլ լինի ընկնել Մոսկվա։ Նրա այդ իղձը կատարվում է 1862 թվին։ Իր ընկեր Միքայելի հետ նա գնում է Մոսկվա։

Մոսկվայում Աղայանը կապվում է ռուսական կուլտուրայի հետ, ծանոթանում ժամանակի առաջադեմ շարժումներին, շփվում ժողովրդի կյանքի ու բարօրության համար պայքարող բազմաթիվ մարդկանց հետ և հատկապես Մոսկվայում ու Պետերբուրգում (այժմ՝ Լենինգրադ) սովորող հայ ուսանողության հետ։

Մոսկվան Աղայանի զարգացման մեջ վճռական դեր է խաղացել։ Այդ կարելի է եզրակացնել նրա այս խոսքերից. «Մոսկվայում մնացի ես 63 թվականի վերջերից մինչև 64 թվականի վերջերը և այդ փոքր



ժամանակամիջոցը կարելի է համարել իմ մտավոր զարգացման ոսկեդարը»։

Պետերբուրգում Աղայանը երկրորդ անգամ հանդիպում է Միքայել Նալբանդյանի հետ և խորը տպավորություններով բաժանվում է նրանից։ Նա այդ հանդիպումը մինչև իր կյանքի վերջը չի մոռանում։

Աղայանը Ռուսաստանից վերադառնում է ժողովրդին լուսավորելու մեծ ձգտումներով։ «Խավար էր մեր աշխարհը, շատ էր խավար, լուսավոր մարդուն պետք էր լապտերով փնտրել»,— գրում է Աղայանը իր ժամանակվա մասին։

Աղայանի կյանքը ուսանելի է, որովհետև նա իր համառ կամքով, իր աշխատասիրությամբ կարողա-

ցավ մութ ու խավար աշխարհի մեջ օգտակար լինել ժողովրդի համար: Նա իր գրվածքներով ու մանկավարժական գործունեությամբ հայ ժողովրդի մեջ տարածում է գիտություն և լուսավորություն: Նա կազմում է «Ուսումն մայրենի լեզվով», «Մայրենի լեզու» և այլ դասագրքեր ու ձեռնարկներ:

Աղայանը լինում է Հայաստանում ու հայաբնակ բազմաթիվ այլ վայրերում. ամեն տեղ հրահրում և օգնում է դպրոցների կազմակերպման ու գրագիտության տարածման գործին: Նշանակալից է նրա դպրոցական աշխատանքը Ախալցխայում և մանավանդ Ալեքսանդրոպոլում (Լենինական): Այստեղ Աղայանը ոչ միայն ուսուցիչ էր, այլ դպրոցական գործի կազմակերպիչ, նոր դպրոցի հիմնադիր:

Այդ մռայլ ու ծանր ժամանակներում Աղայանն իր շուրջը համախմբված մի շարք ուսուցիչների հետ սկսում է գրագիտություն տարածել ոչ միայն տղաների, այլև աղջիկների մեջ, նրանք Ալեքսանդրոպոլում հիմնադրում են Սանդուխտյան օրիորդաց դպրոցը:

Աղայանն աշխատել շատ էր սիրում և իր օրինակով էլ վարակում էր ամենքին: Նա միշտ ասում էր, որ մարդու երջանկությունը աշխատանքի մեջ է, որ ազնիվ ու ստեղծագործ աշխատանքի շնորհիվ միայն կարելի է ստեղծել բարեկեցիկ ու գեղեցիկ կյանք: «Ուսումն ու արհեստը պետք է անբաժան լինեն իրարից, կյանքը պահանջում է, որ ամեն մի մարդ ուսման հետ սովորի նաև արհեստ», ասում էր Աղայանը:

Աղայանը մեծ ուշադրություն էր դարձնում ընտանեկան դաստիարակության վրա և մեծ նշանակություն էր տալիս ծնողների ու հատկապես մոր դաստիարակիչ դերին: Նա ամեն կերպ աշխատում էր մատչելի դարձնել ուսումն աղջիկների համար և ստեղծել աղջիկների առանձին դպրոցներ, աղջիկների կրթությունը պարտադիր դարձնել:

Դաստիարակության ու կրթության հաջողության հիմնական պայմաններից մեկը, ըստ Աղայանի, ընտանիքի և դպրոցի սերտ կապն ու նրանց համագործակցությունն է:

Մեծ մանկավարժը եղել է նաև 1880 թվերի սկզբներին Թիֆլիսում բացված հայկական առաջին մանկապարտեզի ուսուցիչն ու դաստիարակը:

Աղայանը վճռական պայքար է ծավալել հին դպրոցներում իշխող ֆիզիկական պատիժների և կարգապահությունն ամրացնելու նպատակով գործադրվող բարոյական ճնշիչ միջոցների դեմ: Ուսուցչի և աշակերտի հարաբերությունը պետք է լինի պարզ, փոխադարձ սիրո և հարգանքի հիման վրա, ոչ ուսուցիչը պետք է ձանձրանա և տհաճություն զգա աշակերտից և ոչ աշակերտը պետք է խուսափի ու վախենա ուսուցչից:

Աղայանն առանձնապես հարգում ու հետևում էր ռուսական նշանավոր մանկավարժների օրինակին: Նրա կազմած դասագրքերն ու բազմաթիվ աշխատությունները իրենց վրա կրում են ռուս մանկավարժների և հատկապես Կ. Դ. Ուշինսկու ազդեցությունը:

Աղայանը մեծ հարգանք էր վայելում: Նրա «Մայրենի լեզու» առաջին տարվա դասագիրքը 1875 թվականից մինչև 1912 թվականը հրատարակվել է 30 անգամ. երկրորդ տարվանը 11 անգամ:

Աղայանը պարզ, շիտակ և ազնիվ բնավորություն է ունեցել: Հասարակ գյուղացի էր գյուղում, և անվանի գրող՝ գրական ասպարեզում: Սիրել հայրենիքը, սիրել ժողովրդին և անկեղծ ծառայել նրան, ահա այն, ինչ նա համարում էր իր կոչումը:

Աբովյանից հետո մանկական ամենախոշոր գրողը եղել է Աղայանը: Նա վարպետ էր մանուկների համար գրելու և հատկապես պատմելու գործում. ուղղակի գրավում ու կախարդում էր: Առանձնապես ուսանելի ու խրատական էին նրա սքանչելի հեքիաթները և՛ փոքրերի, և՛ մեծերի համար:

Սերունդներ են դաստիարակվել Աղայանի գրվածքներով: Մեր պապերն ու հայրերը սովորել են նրա դասագրքերով, կարդացել են նրա վեպերը, պատմվածքներն ու հեքիաթները և անգիր արտասանել են նրա բազմաթիվ ոտանավորները: Մեկը պատմում էր, որ աշակերտ է եղել, երբ լսել է, թե ինչպես իր պապը արտասանել է Աղայանի «Ճախարակ» ոտանավորի առաջին տունը, երկրորդ տունը շարունակել է հայրը, իսկ երրորդ տունը ինքն է արտասանել: Երբ նա հարցրել է իր պապին, թե՝ «դո՞ւք էլ եք դպրոցում սովորել այդ ոտանավորը», պապը նրան պատասխանել է, թե՝ «իմ պապն էլ գիտեր այդ ոտանավորը»:

Սովետական պայմաններում Աղայանը ավելի բարձր է գնահատվել: Նրա գրքերը հրատարակվել են շատ անգամ: Մեր երեխաներն ու պատանիները այժմ էլ կարդում են Աղայանի գրվածքները, արտասանում նրա ոտանավորները:

Աղայանն ապրել ու երկար կապրի որպես մանկավարժ ու գրող:



## ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆ

*ՂԱԶԱՐՈՍ ԱՂԱՅԱՆ*

Ծիծեռնակը բույն էր շինում,
Ե՛վ շինում էր, և՛ երգում,
Ամեն մի շյուղ կպցնելիս՝
Առաջվան բույնն էր հիշում:

Մեկ անգամ էր նա բույն շինել
Եվ շատ անգամ կարկատել,
Բայց այս անգամ վերադարձին
Բույնն ավերակ էր գտել:

Այժմ նորից բույն էր շինում,
Ե՛վ շինում էր, և՛ երգում,
Ամեն մի շյուղ կպցնելիս՝
Առաջվան բույնն էր հիշում:

Նա հիշում էր անցած տարին
Իր սնուցած ձագերին,
Որոնց համփին հափշտակեց
Արյունարբու թշնամին:

Բայց նա կրկին, բույն էր շինում,
Ե՛վ շինում էր, և՛ երգում,
Ամեն մի շյուղ կպցնելիս՝
Առաջվան բույնն էր հիշում:



## ՔԱՆԻ ՏԱՐԵԿԱՆ Է ՔԱՐԸ

*Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ     Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ*

Դրուժինան էքսկուրսիա էր կազմակերպել: Մեր ճանապարհն անցնում էր ձորի միջով, որի տեղը տասնյակ հազարավոր տարիներ առաջ եղել է մի ընդարձակ հարթություն: Երբ գետն սկսել է հոսել այստեղով, դարեր շարունակ իր հետ դեպի ծով է տարել հողի ու քարի հսկայական զանգվածներ:

Կան գահավիժող, արագահոս գետեր: Կան գետեր էլ, որոնք զուրկ են ջրվեժներից, անցնում են դանդաղ ու ոլորապտույտ հունով: Այդպիսի գետերը կոչվում են ծերացած գետեր:

Էքսկուրսիայի ղեկավարը մեզ հարցրեց.

— Ի՞նչ եք կարծում, կարելի՞ է որոշել, թե քանի տարեկան է մեր դիմացի ժայռը:



— Մի՞թե այդ հարցին հնարավոր է պատասխանել,— ասաց Գուրգենը:

— Այո,— ասաց ղեկավարը և սկսեց պատմել, թե ինչպես են որոշում քարի տարիքը:

— Դուք գիտեք, որ կենդանիների տարիքը որոշում են նրանց ատամների, իսկ ծառերինը՝ նրանց բնի տարեկան օղակների օգնությամբ: Այլ միջոցներով են որոշում քարերի տարիքը:

Շատ հանքային տեսակներ և ապառներ



առաջանում են լճային ավազաններում: Սովետական հայտնի գիտնական Ա. Ե. Ֆերսմանը բյուրեղների ուսումնասիրության ժամանակ նկատեց, որ լճի հատակում առաջացած գիպսի բոլոր բյուրեղները շերտավոր են: Շերտերը լինում են մուգ և բաց գույնի: Նա նկատեց նաև, որ բոլոր առանձին բյուրեղների մուգ շերտերը զտնվում են միևնույն հարթության վրա: Գիտնականը հասկացավ, որ մուգ գույնի շերտերը առաջացել են գարնանը, երբ անձրևներից պղտորված գետերը լիճը լցրել են տիղմով. իսկ բաց գույնի շերտերն առաջացել են ամռան վճիտ ջրում: Հաշվելով այդ շերտերի թիվը, գիտնականը որոշեց, որ գիպսի բյուրեղները առաջացել են 15 տարի առաջ:

Սովետական Միության հյուսիսային մասերում շատ են տարածված շերտավոր կավերը: Գիտնականներն այդ շերտերի գույնի և հատիկների մեծության օգնությամբ որոշել են, թե որ շերտերը տարվա որ եղանակին են առաջացել: Հաշվելով շերտերի թիվը, պարզել են, որ կավերն առաջացել են 15,000 տարի առաջ:

Տեսնո՞ւմ եք մեր դիմացի բազալտի ժայռը: Մի ժամանակ այդ ժայռը չի եղել, բայց այդ ժայռի տակ եղել են ավազների ու կավերի շերտեր: Նրանք առաջացել են ծովում և պարունակում են ծովային խեցիների քարացած մնացորդներ: Երկրաբանները զտնելով խեցիների ապրած ժամանակը, իմանում են, թե երբ են առաջացել այդ կավերն ու ավազները: Այսպիսով այս ժայռը մոտավորապես 2 միլիոն տարեկան է:

Մի ավելի հետաքրքիր միջոց էլ կա, որի օգնությամբ որոշում են ապառների հասակը:

Ապառների մեծ մասը պարունակում է ռադիում մետաղի որոշ քանակություն: Ռադիումը ժամանակի ընթացքում վեր է ածվում կապարի: Իմանալով, թե ինչ արագությամբ է ռադիումը կապար դառնում և ինչքան կապար է առաջացել ապառում, կարելի է որոշել այդ ապառի հասակը:

Այս միջոցների օգնությամբ երկրաբանները մոտավոր ճշտությամբ որոշում են քարերի տարիքը: Օրինակ՝ այժմ հայտնի է, որ ամենահին քարերն աշխարհում մեկ միլիարդից մինչև երկու միլիարդ տարեկան են: Հայաստանում այդպիսի հին քարեր կան Միսխանայի լեռներում՝ Արզական գյուղի շրջակայքում: Փամբակի, Մեղրու, Սևանի և այլ լեռներում քարերի մեծ մասը 50—60 միլիոն տարեկան են: Համեմատաբար երիտասարդ ապառներ են Արթիկի տուֆը, Նոր Բայազետի, Թալինի, Հոկտեմբերյանի և Հայաստանի այլ շրջանների բազալտների մեծ մասը: Սրանց հասակը հասնում է երկու միլիոն տարվա:

Ուշ երեկո էր, երբ մենք տուն վերադարձանք, բերելով ապառների ու հանքային տեսակների շատ նմուշներ: Այդ օրը մենք իմացանք, որ գետերը, սարերը, ժայռերը բնության ուժերի ազդեցության տակ ժամանակի ընթացքում դանդաղ ու աննկատելի փոփոխվում են: Կանցնեն միլիոնավոր տարիներ և այս ձորն ուրիշ տեսք կունենա, գետը ուրիշ տեղով կհոսի, իսկ վիթխարի ժայռերը հող ու ավազ կդառնան:

# ՎԱԳՐԸ

Ռ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Ն. գյուղի բնակիչները խիստ զայրացած էին ուսուրիական վագրի հաճախակի այցելություններից։ Օր չէր անցնի, որ վագրը չերևար։ Նա հանկարծ էր հայտնվում։ Հափշտակում էր շուն, ոչխար կամ խոզ, և մինչև գյուղի մարդիկ հրացաններով հասնում էին, վագրն արդեն մտնում էր մոտակա խիտ անտառը։

Ուսուրիական վագրը, հակառակ իր հնդկական, միջինասիական ազգակիցների, ձմռան ամիսներին, երբ գետինը ծածկվում էր խորը ձյունով, ցրտից ու բուքից չվախենալով էլի հանգիստ չէր թողնում այս կամ այն գյուղը։

Ն. գյուղի ամենափորձված որսորդները, տեսնելով վագրի հասցրած վնասները, որոշեցին ինչ գնով էլ լինի հետապնդել նրան և դատաստանը տեսնել։

Որսորդները գիտեին, որ այդ խորամանկ կենդանին սովորաբար իր որջից որսի է դուրս գալիս արևածագից քիչ առաջ կամ հետո։ Քաղցած վագրը անսպասելի կերպով երևում էր և օրվա ուրիշ ժամերին։

Գյուղի բնակիչները երկյուղից փակվել էին իրենց տներում։

Որսորդները լարված նայում էին այն կողմը, որտեղից սպասում էին վագրին։ Հանկարծ շների հաչոցն ուժեղացավ, զգացին վագրի մոտիկությունը։ Գյուղի հեռավոր անկյունից մի շուն աղիողորմ կլանչեց։ Որսորդները դուրս եկան դիրքերից։ Վագրը խաբել էր նրանց, գյուղ մտել բոլորովին ուրիշ կողմով, հափշտակել որսը ու արդեն գյուղից դուրս էր գալիս։ Որսորդները մի քանի անգամ կրակեցին, բայց իզուր։ Նրանք վագրին հետապնդեցին մինչև գետը։ Գետի մյուս ափը ծածկված էր եղեգնուտներով և խիտ անտառով։ Զպետք է թողնել, որ մտնի անտառ։ Նա գցեց որսը և արագ վազեց դեպի ջուրը։ Հրացանի մի գնդակից նույնիսկ վիրավորվեց, բայց լավ լողորդ էր։ Ուժերն հավաքեց, հասավ հակառակ ափը, ջուրը թափ տվեց, դարձավ որսորդների կողմը, զայրացած մռնչաց ցույց տալով չորս երկար ժանիքները։ Սպառնաց հետապնդողներին, ապա եղեգնուտների մեջ մտավ։

Որսորդները նավակ նստելով շտապեցին վագրի հետքերով։ Մտան անտառ, շատ խորը գնացին, բայց վագրի հետքը կորցրին։ Այլևս միտք չուներ հետապնդել։ Նրանք ետ դարձան գյուղ, որոշելով հաջորդ օրը նորից գալ այս կողմերը և վերջ տալ գիշատիչի կյանքին։

Վագրը անտառի մեջ ավելի ապահով էր։ Իր մորթու շերտավոր շեկ-դեղնավուն գույնը նրան աննկատելի էր դարձնում և օգնում էր աննկատելի մոտենալ իր որսին։ Անտառի ծանոթ ծառուղիներով և արահետներով նա դուրս եկավ ճահճոտ մի բացատ։ Լճացած ջրի ափին վագրը հանդիպեց անճոռնի, սապատավոր ուղտերին, ճյուղավոր եղջյուրներ ունեցող եղջերուներին, վարազներին։ Բոլորն էլ եկել էին ջուր խմելու։ Վագրը ծառերի ետևը թաքնված ընտրում էր իր զոհին։ Նա սպասեց այնքան, մինչև վարազներից մեկն առանձնացավ։ Նա դուրս եկավ ծառերի ետևից, մեծ թռիչքով անձայն վրա հասավ և իր մագիլավոր ծանր թաթով գլորեց սարսափահար եղած վարազին։ Լճափին աղմուկ բարձրացավ, ջուր խմողներն իրարանցման մեջ ընկան, ցրվեցին այս ու այն կողմ։

Վագրն իր նպատակին հասավ. կարիք չուներ մյուսներին հետապնդելու։ Նա սկսեց ուտել որսը։ Մեկ-մեկ մոտենում էր ջրին, ջուր խմում, ապա վերադառնում, շարունակում ուտելը։ Միանգամից կերավ մինչև 30 կիլոգրամ։ Հետո սկսեց նիրհել։ Դրանից հետո վագրը քայլերն ուղղեց անտառի խորքը, շտապեց իր անմատչելի և ապահով որջը։

Հաջորդ օրը արևածագից առաջ վագրը քայլերն ուղղեց դեպի գետափը։ Նրանից ոչ հեռու եղջերու ուղտերը, զգալով ահեղ թշնամուն, կանգ առավ և նայեց նրա կողմը։ Վագրը քողարկվեց։ Ծանապարհով շրջանցեց ուղտերին։ Ուղտերը հանկարծ սարսափահար կանգ առավ, երերաց տե-

ղում, սմբակները խփեց գետնին։ Վագրը թռավ, հարձակվեց որմզդեղի վրա, բայց հանկարծ կատաղի մռնչոցով ետ քաշվեց։ Որմզդեղը իր լայն եղջյուրներով այնպես խփեց վագրի կրծքին, որ նա մի կողմ գլորվեց։ Երբ վագրը սթափվեց և պատրաստվեց նոր հարձակման, որմզդեղն արդեն հեռու էր։

Այդպես են վագրերը. չեն հրաժարվում մեծ և վտանգավոր որսից։ Նեղ տեղ ընկած վագրը ուտում է նաև ձկներ, կրիաներ, գորտեր, մկներ, միջատներ, նույնիսկ հարձակվում է փղի և կոկորդիլոսի վրա։

Քիչ չի պատահել, որ դուրս գալով դաշտ, գյուղի արոտավայրերը վագրը միայնակ, անպաշտպան հովվի քթի տակ հափշտակել է ահաբեկված անասունին։ Անտառում նա փայտահատի է հոշոտել։

Ձմռան ցուրտ գիշերներին անցնելով խոր ձյան միջով վագրը հաճախ երևում է այս կամ այն գյուղում։

Անտառում արդեն մութն ընկել էր։ Շատ չանցած, վագրը հեռավոր բացատում ինչ որ լույս նկատեց։ Զգույշ մոտեցավ լույսին։ Որսորդներն էին. նստած էին խարույկի շուրջը։ Նրանց չորս կողմում գետնին ցցված վառվում էին ջահերը։ Ջահերը վառել էին վագրին վախեցնելու համար։ Իսկապես վագրը վախենում էր կրակից. քիչ անգամ չի պատահել, որ գյուղից նրան վռնդել են ջահերով։

Իր պատսպարանը վագրն ընտրում է անտառի խուլ տեղերում, երբեմն բնակվում է ժայռերի մեջ կամ քարայրներում։ Դեպի որջը տանող ճանապարհը ծածկված է խիտ թփուտներով։ Լավ քողարկված որջում մայր վագրը ծնում և խնամում է իր ձագերին։

Որսորդները երկար թափառումներից հետո, գտան դեպի վագրի որջը տանող հետքերը։ Նրանք զգույշ մոտեցան, դիրքեր բռնեցին։ Որջի մոտ փռված հանգստանում էր մայր վագրը իր երեք վագրուկներով։ Արուն չկար, էլի գնացել էր որսի։ Թփուտների արանքներից լավ երևում էին փոքրիկ վառվռուն ձագուկները։ Նորածին վագրուկները սովորական կատվից երկու անգամ փոքր էին։ Որսորդները լավ գիտեին, որ վագրուկներին ընտելացնելու, վարժեցնելու համար պետք է նրանց բռնել դեռ ամիսը չլրացած։ Այդ հասակից մինչև ութ տարեկան դառնալը վագրը շուտ է ընտելանում մարդուն, կապվում իրեն խնամողին, հանգիստ ու հնազանդ պահում իրեն։ Վարժեցրած վագրը նենգ ու խորամանկ չէ. բայց պետք է նրանից զգուշանալ, չզայրացնել, չչարչարել։

Որսորդները որոշեցին, որ եթե չհաջողվի մորն սպանել, ապա դուրս կքշեն նրան որջից, ձագերին կբռնեն ու ետ կդառնան։ Այդպես էլ արին։ Կրակոցներից մայրը վեր թռավ, կատաղի մռնչաց, այս ու այն կողմ վազեց որջի առաջ, հարձակվեց անկոչ հյուրերի վրա։ Բայց նա մեկի դիպուկ գնդակներից լուրջ վիրավորվեց և փռվեց գետնին։ Երբ վագրը անշնչացավ, որսորդները համարձակ մոտեցան ձագերին, երեքին էլ բռնեցին։ Որսը հաջող ավարտվեց։

Որսորդներն ուրախ էին։ Նրանք ձեռք բերին վագրի թանկարժեք մորթի և երեք ձագ։ Ուրիշ տեղերում, օրինակ՝ Հնդկաստանում մարդիկ երբեմն օգտագործում են վագրի միսը, իսկ ճարպը գործածում հոդացավը և անասունների որոշ հիվանդություններ բուժելու համար։ Չինացիներն օգտագործում են նաև վագրի ոսկորները և լեղին։

Բայց վագրի տված օգուտն ավելի քիչ է, քան հասցրած վնասը։



# ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՄԱՐ



Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ

Բանաստեղծուհի Աղավնու «Հայրենիքի համար» մանկական պոեմի հերոսը մի փոքրիկ դպրոցական է։ Նա իր դասերից ու պարապմունքներից հետո սիրում է շրջել քաղաքում։

Շրջում եմ ես, բայց մի՛ կարծեք,
Թե հենց այնպես՝ աննպատակ,
Աննպատակ թափառելու
Պարզ է, չունեմ ես ժամանակ։
Ես ուզում եմ ծանոթանալ
Ուրախ կյանքին մեր քաղաքի
Ու մոտ լինել, ընկերանալ
Աշխատանքին ամեն մեկի։

Այսպիսով գրքույկի հերոսը ուսումնասիրում է իր շրջապատը, հաղորդակից է լինում կյանքին։ Նա իր շրջագայության ժամանակ հանդիպում է շենքերի համար քարեր տաշող ու քանդակող բանվորների։ Հերոսը հիացմունքով է լսում բանվորին, որը պատմում է այն մասին, թե իրենք շատ բնակելի շենքեր ու դպրոցներ են կառուցել։ Բանվորի աշխատանքը դուր է գալիս փոքրիկին։ Նա մտածում է, որ վատ չէ կառուցող դառնալ։ Բանվորը նրան պատասխանում է, բոլոր աշխատանքներն էլ լավ են։ Միայն հարկավոր է նվիրված աշխատել, ծառայել ժողովրդի ու հայրենիքի համար։ Այս հաստատում են գրքույկի հերոսին հանդիպած մյուս աշխատավորները։

Օրինակ նա հանդիպում է ծեր այգեպանին. Սա հպարտությամբ ցույց է տալիս իր մշակած ծաղիկներն ու ծառերը։ Այգեպանի աշխատանքն էլ է կարևոր։ Պոեմի հերոսին գրավում է նաև Սովետական Բանակի երիտասարդ հրամանատարի առօրյան։ Իսկ հարևան ծեր բժիշկն այդ հերոսին տանում է հիվանդանոց, նրա հետ մտնում հիվանդներին, դեղ է գրում։ Հիվանդանոցում սովետական մարդիկ վերականգնում են իրենց առողջությունը, կազդուրվում և կրկին վերադառնում են իրենց աշխատանքին։ Բժշկի մասնագիտությունը նույնպես դուր է գալիս հերոսին։ Վերջապես երբ նա դասարանում ուսուցչուհուն հարց է տալիս, թե այս բոլոր հետաքրքրական մասնագիտություններից որն է ամենից անհրաժեշտն ու հաճելին, ուսուցչուհին մյուսների նման պատասխանում է նրան.

Ինչ սիրում ես այն էլ դարձիր,
Լսիր միայն, ինչ էլ դառնաս,
Հայրենիքիդ լավ ծառայիր,
Այս խորհուրդս չմոռանաս։

Այս պոեմը մանուկներին սովորեցնում է աշխատել և հասարակության համար պիտանի քաղաքացիներ դառնալ։

Պոեմը գրված է մատչելի ու պարզ լեզվով, աշխույժ և սահուն տաղաչափությամբ և հետաքրքրությամբ է կարդացվում։

ՀԵՂ. ՇԻՐԱԶՅԱՆ






1—25 թվերը դասավորեցեք վանդակների մեջ այնպես, որ բոլոր ուղղություններով թվերի գումարը ստացվի 65:





Փորձեցեք այս գծագիրը բաժանել 4 հավասար մասերի:





Ավտոմեքենաները գարաժում դասավորված են այսպես:

Օգտագործելով ազատ սենյակները 1, 2, 3, 4 ավտոմեքենաները տեղափոխեցեք 5, 6, 7, 8 մեքենաների տեղը և հակառակը, այնպես, որ իրար չխանգարեն:




## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Արյունս բենզին,
Սիրտս երկաթ,
Աշխատում եմ
Ես անընդհատ:

———

Ջրից ծնվում եմ,
Քաղաք եմ գալիս
Արևի նման
Վառ լույս եմ տալիս:

———

Մի ծառ ունեմ,
Որ կյանքում
Պտուղ տալիս,—
Չի ծաղկում:

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջում՝ «ԴԵՊԻ ՃԱՄԲԱՐ»
Գործ. նկ. Է. ԻՍԱԲԵԿՅԱՆԻ


„ПИОНЕР“

№ 6

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, июнь, 1951 г. Ереван





Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06
ՎՖ 02630, Պատվեր 342. Տիրաժ 5000. Տպագրական $2\frac{1}{4}$ մամուլ. Հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ: Արտադրության է հանձնված 18/V—51 թ.: Ստորագրված է տպագրության 7/VI—51 թ.

Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.:

Գինը 2 ռ.



Ի՞ՆՉ ԼԱՎ Է ԱՄԱՌԸ ԿԻՐՈՎԻ ԱՆՎԱՆ ԱՅԳՈՒՄ...

Ֆոտո-էտյուդ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ